# ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

## ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԻՒՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԻԵ.

# ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

## ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԻՒՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1898.

# ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ



## ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԻՒՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ



ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

ԳՐԵՑ

ԳՐ. ԽԱԼԱԹԵԱՆ

ՈՒՍՈՒՑԻՉ ՀԱՅԵՐԷՆԻ ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆՈՒՄ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1898.

Մովսէս Խորենացու աղբիւրների քննական ուսումնասիրութիւնը օրէցօր աւելի պարզում ու լուսաբանում է հայ պատմագրիս վերաբերեալ ամենակարեւոր խնդիրները՝ այն է — նորա աւանդած պատմութեան հաւաստիութեան աստիճանը եւ նորա ապրած ժամանակի որոշ սահմանները: Պէտք է ամեն կերպ աշխատել հրատարակել բոլոր՝ Խորենացուն ուղղակի կամ անուղղակի վերաբերեալ աղբիւրները, առանց միտ դնելու՝ արդեօք նպաստաւո՞ր հետեւանքներ են նոքա առաջացնում մեր մատենագրի համար, թէ աննպաստ: Միայն այսպիսի լուրջ եւ անկողմնասէր վերաբերութեամբ հնարաւոր է յիշեալ խնդիրների վերջնական լուծմանը հասնել, — մի հանգամանք, որ առաջնակարգ կարեւորութիւն ունի ընդհանրապէս հայ պատմութեան եւ գրականութեան համար: Բաւական է դիտել, որ առանց

այդ խնդիրների լուծմանը անկարելի է մօտածել անգամ Ազգային Պատմութեան գիտնական մշակման մասին՝ շնորհիւ այն բացառիկ դիրքին, որ բռնել է Խորենացին մեր պատմական գրականութեան մէջ:

Հազիւ մի տարի առաջ՝ Հայոց Հին Վէպերի մասին գրած ուսումնասիրութեան մէջ են՝ ի միջի այլոց, ենթադրել էի, թէ Խորենացին օգտուած պէտք է լինի նաեւ եօթներորդ դարու առաջին կիսի երկու հայ մատենագիրներից — Սեբէոսից եւ Անանիա Շիրակացուց, որ կասկածելի երեւեց ոմանց. իսկ այժմ՝ նորերս հրատարակուած Սոկրատի Եկեղեցական Պատմութեան եւ Ս. Սեղբեստրոսի Վարքի հայերէն թարգմանութիւնները գալիս են՝ ըստ երեւութին, անհերքելի փաստերով հաստատելու իմ կարծիքս եւ Խորենացու գործածած աղբիւրների ժամանակը առաջ քաշելու առնուազը մինչեւ եօթներորդ դարու վերջին չորս տարիները, այն է՝ մինչեւ 696 թուականը:

Այս վերջին կէտի ապացուցանելուն է նուիրուած եւ առաջիկայ քննական յօդուածը, որ նախապէս մաս մաս լոյս

*տեսաւ "Հանդէս Ամսօրեայ,, թերթում (N. N. 10, 11, 12, 1897 թ.) վերոյիշեալ Մոկրատի Եկեղեցական Պատմութեան Հայ թարգմանութիւնների հրատարակութեան առթիւ:*

*Գր. Խ.*



# ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

## ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԻՒՐՆԵՐԻ

## ՄԱՍԻՆ

---

Վերջապէս լոյս տեսան Նորերս Ս. Էջմիածնի տպարանից վաղուց սպասուած Սոկրատի եկեղեցական պատմութեան երկու Հայ թարգմանութիւնները մի գրքում՝ իրենց կից Ս. Սեղբեստրոսի վարքի նոյնպէս երկու Հայ թարգմանութիւններով [1], որոնց այնչափ կարեւորութիւն են ընծայում Մ. Խորենացու Պատմութեան քննադատական ուսումնասիրութեան տեսակէտից: Այս՝ մի ստուար հատոր է՝ 936 էջից բաղկացած. իւրաքանչիւր երեսում յաջորդաբար զետեղուած են երկու թարգմանութեան բնագիրների համապատասխան հատուածները, —

1 Սոկրատայ Աքոլաստիկոսի եկեղեցական պատմութիւն. Թարգմանեաց Փիլոն Տիրակացի. եւ Պատմութիւն վարուց Սրբոյն Սեղբեստրոսի եպիսկոպոսին Հռովմայ. Թարգմանեալ Աբասուն Գրիգորի Զորոփորեցւոյ, Հատոր Ա. եւ Բ. աշխատասիրութեամբ Մեսրոպ Վ. Տէր Մովսէսեան, միաբանի Ս. Էջմիածնի. Վաղարշապատ, տպարան Մայր Աթոռոյ Ս. Էջմիածնի, 1897, 8°:

Նախ՝ Մեծ Սոկրատինը խոշոր տառերով եւ ապա՝ Փոքր Սոկրատինը միջակ տառերով. այդ բնագիրներից իւրաքանչիւրը ունի իրեն վերաբերեալ հրատարակչից դրած մեկնողական եւ ձեռագրական ծանօթութիւններ, որոնք բուն գրուածքից զանազանելու համար տեղաւորուած են մանր տառերով։ Ընդհանրապէս հրատարակութեան ձեւն ու տեսակը աջող կարելի է համարել. տպագրութիւնն էլ (բաց առնելով գրքի առաջին մասի մի քանի թերութիւնները), որպէս եւ թուղթը վատ չեն[1]։ Մեծ շնորհակալութիւն գրքի հրատարակիչ Արժ. Հ. Մեսրոպ Տէր Մովսէսեանին, որ այսչափ ջանք եւ աշխատութիւն է դրել այդ բազմածաւալ եւ կարեւոր գործի վրայ։ — Բուն Սոկրատի Եկեղ. պատմութեան հայ թարգմանութիւնները բռնում են գրքի էջ 1—690. այնուհետեւ 691—799 էջը Ս. Սեղբեստրոսի Ընդարձակ եւ Համառօտ Վար-

---

1 Ափսոս որ հրատարակիչը՝ հաւատարմութեամբ պահպանելով գրչագրերի «ուղղագրութիւնը», չէ հոգացել ամէն անգամ ճիշտ որոշելու սովորականից տարբերուող դէպքերը որ եւ է միջոցով՝ օր. նօտրագրով, որպէս զի չշփոթուին դոքա տպագրական վրիպակների հետ, որոնց թիւը բաւական մեծ է (տես էջ 829—834)։ Լաւագոյն էր նշանակել. Իքսորել, Եւդ., Եւջ., զայրագնեալով, Սամբատիոս (Σαββάτιος), վայուն, փոյթալիք, քղամիտ եւայլն։ Միւս կողմից՝ անյարմար եւ աննպատակ ենք գտնում հրատարակչի ուղղութիւնը (որի թերութիւնը՝ թէեւ փոքր ինչ ուշ, ինքն էլ է նկատել) — բառացի ճշտութեամբ արտատպել՝ հարկաւ մեծ մասամբ տգէտ ընդօրինակողներից առաջացած, բազմաթիւ տառասխալներով վխտացող Սոկրատի թարգմանութեան հայ բնագիրները։

քերն են։ Մեծ դիւրութիւն է ընծայում ընթերցողին եւ հրատարակչի կազմած "Ցանկ յատուկ անուանց„ — էջ 801—827։ Իւր հրատարակութեան սկիզբը դնում է Հ. Մեսրոպ եւ մի ընդարձակ Յառաջաբան (էջ Ա—ՃԱ)՝ 15 յօդուածի վերածած, որ իսկապէս մի քննական ուսումնասիրութիւն է հայ թարգմանութիւնների, ձեռագրերի, թարգմանիչների անձնաւորութիւնների ու նոցա ժամանակի մասին, որպէս եւ Մ. ու Փ. Սոկրատի եւ Սեղբեստրոսի Վարքի Խորենացու Պատմութեան հետ ունեցած աղերսի մասին։

Ներկայ հրատարակութիւնը հետաքրքրական է շատ կողմերով. ուստի նա անշուշտ կ՚առաջացնէ գիտական գրականութեան մէջ հետազօտութիւնների մի շարք ո՛չ միայն հայ գրականութեամբ, այլ մանաւանդ Սոկրատի Եկեղ. Պատմութեան եւ Ս. Սեղբեստրոսի վարքի բնագիրներով զբաղուողների կողմից՝ ի նկատի ունելով հայ թարգմանութեան հնութիւնը եւ բառացի ճշտութիւնը։ Սակայն մենք կը բաւականանանք այս անգամ կանգ առնել հրատարակչի Յառաջաբանում առանձնապէս շեշտած եւ մեր տեսակէտից կարեւորագոյն մի խնդրի վերայ, այն է՝ ի՞նչ առընչութիւն ունի Խորենացու Պատմութիւնը Սոկրատի Եկեղ. Պատմութեան, եւ Սեղբեստրոսի վարքի հայ թարգմանութիւնների հետ։

Բայց նախապէս անհրաժեշտ ենք համարում մի քանի խօսք ասել ընդհանրապէս մեզ

հետաքրքրող գրուածքների հայ թարգմանութիւնների մասին։ Սոյն կէտի վերաբերմամբ հրատարակիչը իւր Յառաջաբանում այսպիսի հետեւանքների է գալիս.

Մեծ Սոկրատը թարգմանել է յունարէնից Փիլոն Տիրակացին 696 փրկչ. թուականին՝ համաձայն Էջմիածնի եւ Երուսաղէմի՝ նոյն գրուածքի գրչագրերի յիշատակարաններին։ (Ասողիկ դնում է 671—678 թ։) — Սեղբեստրոսի ընդարձակ վարքը թարգմանել է Աբբա Գրիգոր Զորոյփորեցին՝ համաձայն նոյն յիշատակարաններին, 18 տարի առաջ, այն է՝ 678 թ։ Երկու երկն էլ, —որոնք "շուտով միացան մի գրքի մէջ", թարգմանուած են նոյն ժամանակները յայտնի՝ իշխան Ներսեհ Կամսարականի հրամանով։ (Ցուցքն. էջ Գ—ԳԱ.) — Աբբա Գրիգոր Զորոյփորեցին ոչ այլ ոք է, եթէ ոչ նոյն Գրիգորիս Քորեպիսկոպոս Արշարունեաց, որ՝ ըստ Ասողիկի՝ գրել է "ընթերցուածոց մեկնութիւն" գիրքը, նոյն Ներսեհ Կամսարականի խնդրանօք։ — Փոքր Սոկրատը եւ նորա սկիզբը զետեղած Սեղբեստրոսի Համառօտ վարքը համառօտութիւն են Մ. Սոկրատից եւ Սեղբեստրոսի ընդարձակ վարքից, ուստի սոցանից յետոյ կատարուած՝ անանուն, անյայտ մէկի ձեռքով։ (Անդ, էջ ՀԶ եւ յաջ.։)

Համաձայնինք առ այժմ, որ Մ. Սոկրատի երկու գրչագրերի յիշատակարանների տուած տեղեկութիւնները թարգմանութեան ժամա-

նակի մասին աւելի վստահելի են, քան Աստղիկի ցուցումը. բայց դորանից կարելի՞ է արդեօք հետեւցնել, թէ Փիլոն Տիրակացին կատարել է իւր թարգմանութիւնը յատկապէս ՆԵՐՍԷՀ ԿԱՄՍԱՐԱԿԱՆԻ հրամանով: Ի հարկէ ոչ: Եւ ո՞ր տեղից այս գիտէ հրատարակիչը: Այս մի ենթադրութիւն է, որ հիմն չունի:

Անհիմն է դարձեալ հրատարակչի պնդումը՝ թէ "ՆԵՐՍԷՀ ԿԱՄՍԱՐԱԿԱՆԻ" հրամանով է ձեռնարկել Աբաս Գրիգոր Զորոյփորեցին Սեղբեստրոսի Ընդարձակ վարքի թարգմանութեան: Վերոյիշեալ վստահելի յիշատակարանը, որ ամէն անգամ ցաւակցաբար ոչ ցանկալի ճշտութեամբ է մէջ բերուած հրատարակչից[1], եւ որի բնագրի լուսատիպը բարեբախտաբար ունիմ իմ ձեռքս իւր իսկ՝ Արժ. Հ. Մեսրոպի շնորհիւ, բառացի այսպէս է.

"Յառաջ քան զութուտասն ամ ի թարգմանելոյ Փիլոնին զգիրսդ զայդ Սոկրատայ զեկեղեցական պատմութիւն թարքմանեալ էր Աբասուն Գրիգորի Զորոյփորեցւոյ թարքմանի ընդ փառաւորս յիշելոյ Ներսէհի Վրաց իշխանին փեսային Կամսարականաց զգիրս պատմութեան վարուց սրբոյն Սիղբեստրոսի եպիսկոպոսին Հռոմայ, եւ կայր ի քարտիսի. այժմ պատշաճ համարեցաք առ դմին գրոց գրել:"

"ՆԵՐՍԷՀ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ" մենք այստեղ չենք գտնում, ինչպէս պնդում է միշտ հրատարակիչը.

---

1 Տես ՅԱՌԱՋ. էջ ԾԷ, ՁԵ եւ Սեղբ. վարքի Նախընթաց էջը՝ առանձին խորագրով:

խօսքը Վրաց Ներսեհ իշխանի մասին է, որ կամսարականներին փեսայ էր։ Մի անգամ այս թերիմացութիւնը առաջանալով՝ հրատարակիչը այնուհետեւ անդադար կրկնում է իւր սխալը, եւ Աբաս Գրիգորի Զորոյփորեցու Մեկենասին՝ Ներսեհ կամսարական է կոչում միշտ՝ փոխանակ կամսարականների փեսայ Վրաց Ներսեհ իշխանի[1]։

Այս այսպէս լինելով՝ կը զրկուի հիմունքից հրատարակչի եւ երրորդ տարօրինակ ենթադրութիւնը, որով նոյնացնում է նա Աբաս Գրիգոր Զորոյփորեցուն Գրիգորիս Արշարունեաց քորեպիսկոպոսի հետ։ (Ցուցըն. էջ ԶԵ—ԶԸ.)

Եթէ անգամ բռնազբօս մեկնութիւն չըտանք այդ նոյնացման մասին ազգային մատենագիրների կատարեալ լռութեանը, եթէ միտ չըդնենք այդ երկու անձնաւորութիւնների զանազան անուններին եւ կոչումներին,[2] եթէ նկատի չառնենք նաեւ նոցա ընծայուած գրուածքների լեզուի ու ոճի գլխովին տարբերութիւնը, որ այսու ամենայնիւ բարձրաձայն բողոքում է հրատարակչի նոյնացման դէմ, եւ թոյլ տանք

---

1 Մի “Ներսէհ իշխան Վրաց„ յատկապէս 677—687 թուերին յիշում է Յովհաննէս կաթողիկոս. “Յաւուրս սորա (Իսրայէլ կթղի.) զբռնաւորեայ ումն զօրագլուխ զօրուն Տաճկաց որ ի Հայս՝ վանեալ վատնէ կոտորմամբ սաստիւ Ներսեհ իշխան Վրաց՝ փախստեայ զնա արարեալ„։ (Տպ. Երուս. էջ 118։)

2 “Զորոյփորեցի„ ծննդավայրի կոչումն է, որ անշուշտ պէտք է պահէր Աբաս Գրիգորը իւր եպս. ձեռնադրուելուց էլ յետոյ։ Հմմտ. Եղնիկ Կողբացի՝ եպիսկոպոս Բագրեւանդայ, եւ ուրիշ շատերը։

մի րոպէ, թէ Գրիգորէ Արշարունեաց քոր-եպիսկոպոսը իւր աթեռակալութեան ժամանակ, այն է՝ մինչ. 684 թուականը, ինչպէս բացատրում է Հրատարակիչը (էջ ԶԷ), արդարեւ Աբաս Գրիգոր Զօրոյփորեցի էր կոչուում, — ի՞նչպէս հապա նոյն անձի եպիսկոպոս ձեռնադրուելուց 10—12 տարի էլ յետոյ, այսինքն 696 թուականին, Սեղբեստրոսի վարքի վաւերական յիշատակարանը շարունակում է հանգիստ կերպով "Աբաս Գրիգոր Զօրոյփորեցի" անուանել նորան, առանց ակնարկելու Արշարունեաց Գրիգորիս քորեպիսկոպոսի մասին, որ յատկապէս 696ից բաւական վաղ[1] հռչակուած էր իբրեւ յայտնի իմաստասէր ու գիտնական եւ Հայոց նուիրապետութեան մէջ ականաւոր անձն։

Այսպէս ուրեմն՝ թողնելով Աբաս Գրիգորին իւր սեպհական գոյութիւնը ունենալ, իբրեւ անկախ անհատ՝ զատ Գր. Արշարունեաց եպիսկոպոսից, մենք աւելի բնական կը գտնենք եւ նորա Զօրոյփորեցի կոչումը, որ տանում է մեզ դէպ ի Գուգարք՝ այդ փոփոխակի Հայոց եւ Վրաց իշխանութեան տակ գտնուող աշխարհը,

---

1 Ասողիկի յիշատակութիւնը Արշարունեաց Գր. քորեպիսկոպոսի մասին 688 թուականին է։ — Ի դէպ է յիշել, որ նոյն Գր. Արշարունեաց՝ հակառակ Հ. Չամչեանի ցուցման (Բ. 343, 562), մասնակցել է՝ ըստ երեւութին, եւ Մանազկերտի ժողովին (726 Թ.). ուստի եւ վախճանուած պէտք է լինի նա ոչ 713 թուին, ինչպէս դնում է եւ Հ. Մեսրոպ (Ցուցք. էջ ԶԷ.), այլ գոնէ 726ից յետոյ։ Մանազկերտի ժողովի մասին տես նաեւ Հ. Ց. Տաշեանի Ցուցակ Հայեր. ձեռագր. Վիեննի. Մխիթ. էջ 768։

ուր Վրաց Ներսէհ իշխանը բնականաբար ամէն դիւրութիւն կարող էր ունենալ իւր գաւառի վանականներից մէկին իւր մեկենասութեան շնորհները ցոյց տալու։

Իսկ վերաբերութեամբ Փ. Սոկրատի (եւ նորան կից Սեղբեստրոսի Համառօտ Վարքի) ծագման մասին Հ. Մեսրոպի յայտնած եզրակացութեան — մենք համամիտ ենք հրատարակչի հետ. այդ գրուածքը արդարեւ համառօտութիւն է Մ. Սոկրատից եւ Սեղբեստրոսի ընդարձակ վարքից, ինչպէս պարզ երեւում է երկուսի բնագիրները իրարու հետ մանրամասն բաղդատելուց։

* * *

Գանք այժմ մեր գլխաւոր խնդրին՝ այն է Սոկրատի Պատմութեան եւ Սեղբեստրոսի Վարքի հայ թարգմանութիւնների Խորենացու Պատմութեան հետ ունեցած աղերսին, որից պրոֆ. Կարիէր եւ ուրիշները հայ պատմագրի համար յայտնի աննպաստ հետեւողութիւնն են անում, իսկ Հ. Մեսրոպ իւր Յառաջաբանում աշխատում է՝ ընդհակառակն՝ ապացուցանել Խորենացու անկախ լինելը յիշեալ գրուածքներից։ Ընդհանրապէս դիտելու է, որ Հ. Մեսրոպ՝ շնորհիւ ինչ որ սկզբունքի՛ ասեմ, թէ կանխակալ կարծիքի, նախավճռում է այն վիճելի խնդիրը, որ այժմ մանրակրկիտ ուսումնասիրութեան, քննադատութեան եւ ամէն տեսակ հետազօտութեան առարկայ է դարձած գիտնական աշխարհում, այն է՝ Խորենացու ո՞ր դարու

հեղինակ լինելը։ Սոկրատի հրատարակիչը ոչ աւելի, ոչ պակաս ասում է. "Խորենացին է եւ նը շարունակի Ժող. Ե. որդ դարում ապրող, նոյն դարում գրող Սահակ եւ Մեսրոպ մեծ ուսուցիչների աշակերտը„ ։ (Յուշքն. էջ ԽԱ։)

Հ. Մես. Տէր Մովսէսեանը այսպէս է ձեւակերպում իւր "վերջնական„ եզրակացութիւնները, որ հարկաւոր ենք համարում ամբողջութեամբ առաջ բերել։

1. "Խորենացին չէ ճանաչել Սոկրատի եկեղեցական պատմութիւնը, եւ ոչ էլ որ եւ է կերպ օգտուել նրա յունարէն կամ հայերէն բնագրից. բայց օգտուել է Սեղբեստրոսի վարքից, թէեւ ոչ մեր ձեռքը հասած հայերէն թարգմանութիւնից„ ։ (Յուշքն. էջ ԽԹ։)

2. Սեղբեստրոսի վարքի մեր ձեռքը չհասած հայերէն թարգմանութիւնից զատ՝ Խորենացուն իբրեւ աղբիւր ծառայել են նաեւ Ագաթանգեղոսի գրուածքում մի ժամանակ գոյութիւն ունեցած եւ նոյնպէս մեր ձեռքը չհասած մասերը ։ (Անդ, էջ ԾԱ. Հ—ՀԱ։)

3. "Մովսէս Խորենացին շատ յայտնի եւ համարեա կանոնական նշանակութիւն ստացած հեղինակն էր այն ժամանակ, երբ կրճատւում էր Մեծ Սոկրատը, եւ համառօտողը խոնարհելով նրա մեծ հեղինակութեան առաջ, նոյն իսկ իւր բնագիրը՝ ըստ այնմ է փոխում, շարունակ օգտուելով Խորենացուց„ ։ (Անդ, էջ ՀԶ։)

Քննենք մի առ մի այս կէտերը։

# 1.

Թէ Խորենացին ճանաչել է հոյներէն Սոկրատի պատմութիւնը համառօտած՝ այդ ապացուցել է, եւ մեր կարծիքով՝ համոզեցուցիչ կերպով, պրոֆ. Կարիէր („Ազգային Մատենադարան„, Ը. եւ ԺԳ. Վիեննա, 1893—94։) Մենք էլ հարեւանցի զբաղուել ենք նոյն խնդրով մեր „Армянскій Эпосъ“ հետազօտութեան մէջ (էջ 19—32)։ Այժմ Սոկրատի լոյս տեսած լիակատար հրատարակութիւնը միջոց է տալիս մեզ թէ հաստատել փրանսիացի գիտնականի ցուցումները, եւ թէ բացի դորանից՝ ապացուցանել հայ պատմագրի կախումը նաեւ Մեծ Սոկրատին կից Սեղբեստրոսի Ընդարձակ ճառէից։

Պէտք է նկատել, որ մինչեւ այսօր ուսումնասիրութեան նիւթ եղած Խորենացու Պատմութեան նմանութիւնները Համառօտ Սոկրատի հետ՝ վերաբերվում են այնպիսի դէպքերի, ուր երկու գրուածքն էլ միեւնոյն, համանման անցքերի եւ անձերի մասին են աւանդում, ինչպէս պրոֆ. Կարիէրի ցոյց տուած Կոստանդիանոսի հրաշքով հաւատալը, Վրաց դարձը, Նիկիական ժողովը, որպէս եւ այն բոլոր օրինակները, որ առաջ է բերել Հ. Մեսրոպ[1] (էջ Ծ—Հ.)։ Այս հան-

[1] Հ. Մեսրոպ, չգիտեմ, մոռացմամբ արդեօք չփոթում է Ա. Կարիէրի ակնարկած Խորենացու (Բ, 88) մի այլ աղբիւրից՝ Մողողոսից (Զ. դարու վերջը) քաղած փոխառութիւնները Փ. Սոկրատի հետ։ (Ցուցըն. էջ ԿԳ։) Նոյն Մողողոսին է վերագրում Փրանսիացի գիտնականը եւ Խորենացու Բ. գրքի 83որդ գլխի սկզբնոն բառը, որ Հ. Մեսրոպ հակամէտ է Ագաթանգեղին յատկացնել։ (Անդ, էջ ԾԱ։)

գամանքն է, որ տեղիք է տուել Սոկրատի հրատարակչին եզրակացնելու, թէ Համառօտը Մ. Սոկրատի եւ Խորենացու աւանդած նոյն անցքը պատմելիս՝ "Նրան սրբագրում է համաձայն անպայման հեղինակաւոր Խորենացու Պատմութեան" (էջ ԾԵ). եւ կամ՝ "Համառօտը Սոկրատի պատմութիւնը համապատասխան չգտնելով բուն ազգային պատմութեան, որի բացարձակ հեղինակութիւնը Խորենացին էր", ուղղակի դորանից է օգտվում (էջ ՀԵ.)։

Բայց մենք առաջ կը բերենք այս անգամ այնպիսի օրինակներ, ուր պատմութեան առարկան, պատմական անուններն ու անձերը բոլորովին տարբեր լինելով Խորենացու եւ Փ. Սոկրատի մօտ, այնու ամենայնիւ զարմանալի նմանութիւններ կը գտնենք նոցա գրութեան արտաքին ձեւի՝ նկարագրութեան մէջ, մի շարք բառերի ու դարձուածների մէջ։ Ո՞ր տեղից են ուրեմն առաջացել այս տեսակ բառացի նմանութիւնները։

Այստեղ ինքն ըստ ինքեան հարց է ծագում Խորենացու գրութեան ձեւի մասին, սորան յատուկ մատենագրական եղանակի մասին, որ՝ նաեւ անկախ Մ. ու Փ. Սոկրատի խնդրից եւ դորանից շատ վաղ, արդէն դիտուած է եւ հաստատուած[1]. այն է՝ հայ պատմագիրը, բաց ի

1 Համեմատէ Նոր Հայկազ. Բառգիրք, Առաջաբան (Վենետիկ, 1836), Նորայրի "Քննասէր", Բ., Հ. Յ. Տաշեան Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալլիսթենի (Ազգ. Մատ. Ե. Վիեննա, 1892.), իմ հետազօտութիւնս՝ „Армянскій эпосъ" եւ այլն։

ուղղակի ազգային պատմութեան վերաբերեալ իւր մի քանի աղբիւրներից, ունէր իւր ձեռքին նաեւ ոչ սակաւ կրօնական, փիլիսոփայական եւ պատմական գրուածքներ հայերէն թարգմանութեամբ, որոնք նորան իբրեւ օժանդակ աղբիւր էին ծառայում՝ եւ յատկապէս ոճաբանական նիւթ՝ առանձին բառեր, դարձուածներ անգամ եւ հատուածներ մատակարարելով նորան, ինչպէս յիրաւի եղած են նորա համար Ս. Գրքի, Եւսեբիոս Կեսարացու, Կալլիսթենէսի, Փիլոնի, Գրիգոր Նազիանզացու, Գրիգոր Նիւսացու եւ ուրիշների հայ թարգմանութիւնները։ Այսպիսի օժանդակ-աղբիւր եղած է Խորենացու համար եւ Փ. Սոկրատ։

Սոկրատ իւր Ե. գրքի 25րդ գլխում պատմում է բաւական մանրամասն Մեծն Թէոդոսի պատերազմը բռնակալ Եւգինիսի հետ, որ՝ սպանելով արեւմտեան կայսր Վաղենտինիանոսին, տիրել էր Հռոմին։ Կռիւը տեղի ունեցաւ Թէոդոս կայսեր մասնակցութեամբ Գաղղիայում, ուր Բակուրիոս կայսերական զօրավարի քաջութեան շնորհիւ յաղթուեց բռնակալը եւ անձնատուր լինելով՝ սպանուեց զօրականներից կայսեր ոտների տակ։ Այդ նկարագրութիւնը համարեա բառացի ունին Մ. ու Փ. Սոկրատ, թէեւ երկրորդը՝ բաց ի դորանից, ներկայացնում է ըստ սովորութեան՝ իրեն յատուկ աննշան յաւելուածներ, որոնք այստեղ ամենայնիւ չեն կարող կասկածի ենթարկել նոցա հեղինակի անմիջական կախումը Մեծ Սոկրատից։

Ահաւասիկ Փ. Սոկրատի պատմածը.

«... Եւ հասեալ (Թէոդոս կայսեր) ի Գաղիայ յոլովք ի բարբարոսացն գան առ Թէոդոս մարտակից լինել ընդ նմա ընդդէմ բռնակալին (Եւգինեայ) ... Եւ խմբեցաւ պատերազմ առ գետովն որ կոչի Փռիգդոն ... իսկ բարեպաշտն Թէոդոս ետես պարտեալ եւ լքեալ զայլազգիսն, որ մարտակիցք նորա էին, ի մեծի հանդիսի լինեալ ընգէց լինին¹ ի գետին եւ մեծաւ հառաչանօք եւ արտասուօք յօգնութիւն կոչէր զԱստուած ... անդէն զօրացեալ եղեն ի վերին զօրութենէն զօրք թագաւորին։ Զի Բակուռիոս զօրավար թագաւորին ... պատառէր զռազմ մարտին եւ դարձուցանէր ի փախուստ զմարտուցեալսն. եւ բազում մահս եւ վիրաւորս առնէր ի թշնամեացն։ Բայց լինէր եւ այլ զարմանալիք. հողմ ուժգին հարեալ ընդդէմ բռնակալին եւ զօրաց նորա եւ զնետս իւրեանց ի ձգողսն դարձուցանէր ... Զի Տէր էր, որ պատերազմէր ընդ բռնակալին, ընդունելով զթագաւորին զաղօթս ... մինչեւ պարտեցաւ բռնակալն։ Զի ոչ էր հնար զնմա փախչել՝ ի հեզութիւն թագաւորին վստահացեալ, ընթացեալ յոտս թագաւորին անկանէր, աղաչէր զփրկութիւն ... իսկ անդէն զինուորքն հատին զգլուխն զբռնակալին Եւգինի։ Եւ այսպէս բարձաւ չարն ի միջոյ եւ եղեւ խաղաղութիւն... իսկ Առբոգաստիոս, որ այսքան չարեաց պատ-

¹ «Լինին» սխալ լինելու է՝ փոխանակ գետին, ինչպէս ունի եւ Մ. Սոկրատ։

ճառ եղեւ ... փախուցեալ եւ ոչ կարացեալ ղերծանիլ ի Հետամտից, ընդ ինքեան սուր եդեալ ապականեցաւ չարն ...„ (էջ 479—483)։

Խորենացին՝ նկարագրելով իւր Գ. գրքի 37րդ գլխում Հայոց մեծ պատերազմը՝ Պարսիկներին առաջնորդող դաւաճան Մեհրուժանի դէմ, Հայոց յաղթութիւնը՝ Մեծն Թէոդոս կայսեր զօրքերի օգնականութեամբ, եւ Մեհրուժանի սպանումը — այլ աղբիւրների թւում՝ օգտվում է եւ Փ. Սոկրատի վերոյիշեալ տողերից, թեթեւ փոփոխութեամբ յարմարցնելով դոցա իւր պատմութեան արտաքին, ձեւական մասերին։

“... Եւ խմբեցաւ պատերազմն ի դաշտին որ կոչի Ձիրաւ ... Արդ իբրեւ ետես Մեծն Ներսէս զայն ամենայն, ել նա ի կատար լերին Նպատայ եւ ամբարձ զձեռս իւր յերկինս ի խնդրուածս ... մինչեւ պարտեցաւ երկրորդն Ամաղեկ ... իսկ ի բախել զմիմեանս ... Հողմ սաստիկ ի մերոցն կուսէ ընդդէմ պարսկականին փչեալ ... Եւ յարձակեալ Սպանդարատ (Կամսարական) եւ հերձեալ զխումբն ... ի փախուստ դարձուցանէր։ Եւ այսպէս ի վերինն օգնականութենէն զօրացեալ հասարակ զօրքն Յունաց եւ Հայոց, դիակամբք Պարսից լցին զդաշտն ամենայն ... Բայց ամբարշտին Մեհրուժանայ վերաւորեալ ձին ոչ կարաց երագել ընդ փախըստեայսն, որում աճապարեալ հասանէ սպարապետն Հայոց Սմբատ։ (Հետեւում է շամփուրի ծանօթ պատմութիւնը։) Եւ մինչդեռ տաք էր

(շամփուրն) իբրեւ զհուր, եդ (Սմբատ) ի գլուխ Մեհրուժանայ եւ այնպէս ապականեցաւ չարն։ Եւ յայնմ հետէ խաղաղեցաւ երկիրն...։„

Թէ արդարեւ Խորենացու այս գլուխն էլ միւս շատերի նման մի քանի աղբիւրից յօրինուած մօզաիկ է, ուր Փ. Բուզանդ՝ թէեւ կերպարանափոխուած, պատմութեան հիմքն է կազմում, իսկ մնացեալները՝ երկրորդական պարագաներ, — պարզ է առաջիկայ ցուցումներից։

Յիշեալ 37րդ գլխի ընդհանուր բովանդակութիւնը, պատմական եղելութիւնները, որպէս եւ Յունաց վահանափակ զօրքի նկարագիրը առած է Բուզանդէն (Ե, 4, 5, 43), որ՝ ի միջի այլոց, բոլորովին տարբեր է պատմում Մեհրուժանի սպանումը, եւ այն՝ առանց Խորենացու հովանաւորեալ՝ Բագրատունի իշխանի մասնակցութեան։

Յունաց վիշապանիշ դրօշակների նկարագիրը — "Բայց վիշապացն նշանաձեւ անօթքն բերանաբացութեամբ ուռուցեալ ի փչմանէ օդոյն...„ — առած է Գրիգոր Նազիանզացւոյ. — "վիշապացն ահաւոր բերանաբացութեամբք շնչեցեալք եւ ձգմամբ փողփողեալք՝ նշանաձեւքն խայտաբղէտ անկուածովքն, հեշտալի միանգամայն եւ ահաւոր տեսութիւն„ եւն։ (Առ Յուլիանոս, Ա. Ձռգր. Վիենն. Մխիթ. Nr. 217, թուղթ 182բ։)

Արեգակի ճառագայթների ցոլումը պղնձապատ վահանների վերայ — "իսկ ի ծագել արեգականն ընդդէմ մերոց զօրացն, է պղնձապատ վահանացն նշոյլք շլերամբքն փայլատակէին իբրեւ յամպոյ մեծէ եւ ի նոցանէ ի դուրս ոստչէին ի մե-

րոց Նախարարացն քաջ զօրաւորք՝ որպէս փայլատականց ճառագայթք„ — ասած է Ս. Գրքից. „Իբրեւ անտի արեգակն ծայրս արձակէր, առհասարակ ի զօրաւոր պատենազէն պղնձապատ վահանացն նշոյլք շլացուցիչ փայլատակէին, եւ ճառագայթք հատանէին լերինք փայլատականց հրոյ։„ (Ա Մակաբ. Զ. 39)։

Աւելի արժանի է ուշադրութեան՝ Խորենացու փոխառութեան միւս դէպքը։

Ս. Սեղբեստրոսի (ընդարձակ) վարքի հեղինակը՝ իւր գրուածքի սկզբում (էջ 698—699), նուիրում է մի հակիրճ, բայց գեղեցիկ նկարագիր այդ քահանայապետի հոգեւոր եւ բարոյական առաքինութիւնների, որոնց միայն ընդհանուր իմաստն է հաղորդում Համառօտ վարքը։[1]

---

[1] Ահաւասիկ Փ. Սոկրատի (կամ՝ որ նոյնն է՝ Համառօտ վարքի) նկարագիրը. „...այսպէս ի Քրիստոսի ընծայէր ի քահանայութիւն վիճակս, որպէս եւ վայելէր։ Եւ գերազանցեալ եւ վայելչացեալ այրն ճանաչիւր ի ժառանգաւորս եկեղեցւոյն Հռովմայ. վերագոյն ըստ արդարութեան աւետարանին յառաջանայր յամենայնի՝ պինդ հաւատով, եւ վարուքն (var. առաքինի վարուք) եւս պնդագոյն. բարեխորհ, ողջախոհ, սուրբ, մեկնեալ յամենայն իրաց չարաց. հեզաբարուք (var. հեզ բարուք) եւ խոնարհ սրտիւ, երկայնամիտ եւ մարդասէր, ահաւոր մեղուցելոցն, հրեշտակական դէմք, հրեշտակական եւս շարժմամբ եւ բարբառով, եւ յամենայնի զսրբոցն ունէր զնմանութիւն, որոց աշակերտեալն էր զճշմարտութիւնն ի Քրիստոս Յիսուս։ — Յայսոսիկ լինէր վախճան հայրապետութեան Մեղխեայ...։„ (էջ 699։ Տե՛ս եւ Տեսութիւն Սեղբեստրոսի պատմութեան, հրատ. Արժ. Հ. Բարսեղ Սարգիսեանի, Վենետիկ 1893, էջ 7—8, — որից առել ենք եւ մեր յառաջ բերած յունարէն բնագրի համապատասխան հատուածը։)

"Երեսնամեայ ահայ ամաց էր, յորժամ ի սրբոյն Մեղիտիադէ ի սարկաւագութեանն նախաձեռնարկեցաւ պատիւ ամենայնն ապա պատուով ուրախացեալ եւ բարեվայելչացեալ քան զբոլոր վիճակաւորսն: Վասն զի ամբարտաւանութեան եւ մարդահաճոյութեան առ ի նորա վարս տեղի գտանել ոչ ուրեք կարացին. այլ հեզ եւ բարիակամ եւ քաղցրաբարոյ գոլով, եւ երկնայնոցն զարդարեալ առաքինութեամբք զինքն բոլորից ցուցանէր. Վասն զի գոյր տեսլեամբ հրեշտակական, բանիւ առատապայծառացեալ, գործով սուրբ, մարմնով արփափայլեալ, բար[ս]ուք անճառ, խորհրդակցութեամբ մեծ, հաւատով ուղիղ, յուսով համբերողական, սիրով անկեղծաւոր: Այլ վասն զի զբոլորսն նորա զօրութիւնսն ոչ եմ բաւական ասել, առ ի մասնաւորականսն նորա գործեցեալս դարձուցից զբանս: Ս. Միղդիադոսի եպիսկոպոսի առ Աստուած զգնացս առնելով...:"

Գնում ենք այստեղ եւ յոյն բնագիրը, որը բաղդատեցէք ճշտութեամբ՝ ստրկօրէն փոխադրել է հայ թարգմանիչը իրեն լեզուին յատուկ եւ բնորոշ ոճով:

„Ἡ γὰρ ὑπερηφανεία, καὶ ἡ ἀλαζονεία ἐν τοῖς αὐτοῦ τρόποις χώραν ἔχειν οὐδαμῶς ἠδυνήθησαν. ἀλλὰ προσηνὴς καὶ αγαθοθελὴς, καὶ ταπεινόφρων ὑπάρχων, οὐρανίοις ἤθεσιν κεκοσμημένον ἑαυτὸν πᾶσιν ἐπιδείκνυεν; ἦν γὰρ τῇ θέᾳ ἀγγελοειδὴς, τῷ λόγῳ διαλάμπων, τῷ ἔργῳ ἅγιος, τῷ σώματι ἐῤῥωμένος, καὶ τοῖς ἤθεσιν ἄριστος, τῇ συμβουλίᾳ μέγιστος,

τῇ πίστει ὀρθόδοξος, τῇ ἐλπίδι ὑπομονητικὸς, τῇ ἀγάπῃ ἀνυπόκριτος. Ἀλλ᾽ἐπειδή, πάντα αὐτοῦ τὰ κατορθώματα, οὐχ οἷός τε εἰμι καταλέγειν, ἐπὶ τὰ μερικῶς πραχθέντα ὑπ᾽ αὐτοῦ τρέψω τὸν λόγον. Τοῦ ἁγίου τοίνυν Μελτιάδου πρὸς τὸν δεσπότην Θεὸν τὴν πορείαν ποιησάμενος...„

Միտ դնելու է մանաւանդ առաջիկայ յոյն դարձուածներին. — τῷ λόγῳ διαλάμπων = "բանիւ փառապայծառացեալ,„ — ἡ γαρ ὑπερηφανεία καὶ ἡ ἀλαζονεία ἐν τοῖς αὐτοῦ τρόποις χώραν ἔχειν οὐδαμῶς ἠδυνήθησαν = "Վասն զի ամբարտաւանութիւն եւ մարդահաճոյութիւն առ ի նորա վարս տեղի գտանել ուրեք կարացին.„ — τῷ ἔργῳ ἅγιος = "գործով սուրբ.„ — Հետաքրքրական է եւ τῷ σώματι ἐρρωμένος = "մարմնով արփափայլեալ„, Թէպէտ ἐρρωμένος իսկապէս զօրեղ, ուժեղ է նշանակում (ῥώννυμι), իսկ "արտափայլեալ„ ձեւի համար գուցէ ἐκλάμπων կամ նման մի բառ սպասելու էր յոյն բնագրում. ինչպէս որ փոքր ինչ ներքեւ յոյնի „ἐκλάμπειν“ (էջ 35) հայը (Ը.Վ.) արդարեւ "արտափայլել„ է թարգմանել (էջ 736)։ Նկատենք վերջապէս, որ ընդարձակ վարքը ունի մի պարբերութիւն — "Երեսնամեայ ահայ ամաց էր... եւ բարեվայելչացեալ քան զբոլոր վիճակաւորսն„ —, որ պակասում է յոյն բնագրում (ըստ Հրատարակութեան Արժ. Հ. Բ. Սարգիսեանի, էջ 7)։

Հիմա դառնանք Խորենացուն։ Սա՝ իւր Գրքի 67<sup></sup>րդ գլխում "Փոխումն յաշխարհէ Սահակայ եւ Մեսրոպայ երանելւոյ„, գլխաւորելով այդ երկու մեծ մարդոց գործունէութիւնը, տալիս է մեզ նոյն անձնաւորութիւնների բարոյական պատկերը — համառօտ՝ Սահակի մասին եւ փոքր ինչ ընդարձակ՝ Մաշտոցի մասին։ Արդ՝ վերջինիս նկարագրի մէջ տասնուհինգ տող բառացի փոխ է առել Խորենացին Սեղբեստրոսի Ընդարձակ վարքի վերոյբերեալ հատուածից՝ իրեն յատուկ ճարտարութեամբ յարմարցնելով Հռոմի հայրապետին վերագրած բարեմասնութիւնները Հայոց մեծ վարդապետին։ — Պէտք է միեւնոյն ժամանակ նկատել, որ փոխառած հատուածը այնպէս սերտ եւ անանջատ կապակցութիւն ունի ամբողջ 67րդ գլխի հետ, որ անկարելի է բաց թողնել այդ տողերը՝ առանց զգալի կերպով վնասելու Մաշտոցի պատմութեան հետեւողութեանը եւ նոյն գլխի ընդհանուր բովանդակութեան։ Ապա ուրեմն ուրիշներից յետ ժամանակի ներմուծուած համարել նորան բնաւ կարելի չէ։

Ահա եւ Խորենացու հատուածը։

"…Եւ զկնի վեց ամսոց անցելոյ, յերեքտասանն մեհեկանի, եւ երանելին Մեսրոպ փոխեցաւ յաշխարհէ ի Վաղարշապատ քաղաքի. գերազանցեալ քան զամենայն, որք զայնու ժամանակաւ էին առաքինիք։ Քանզի ամբարտաւանութիւն եւ մարդահաճութիւն ի նորա (var. երեք օրինակ՝ ոչ ի նորա) չգոյր տեղի գտանել

երբեք ոչ կարացին. այլ հեղ եւ լաւանձամ եւ բարեխորհուրդ գոլով, եւ երկնայնոցն զարդարեալ առաքինութեամբք, զինչ բոլորեց ցուցանէր։ Վասն զի գոյր տեսլեամբ հրեշտակական, *մտօք ծննդական*, բանիւք պայծառ, գործովք *ժուժկալ*, մարմնով արդարափայլեալ, սորասուք անճառ, խորհրդակցութեամբ մեծ, հաստատով ուղիղ, յուսով համբերող (var. *Լամբր.* — համբերողական), սիրով անկեղծաւոր, ուսուցանելով անձանձրոյթ։ — Այլ վասն զի զբոլոր ուղղութիւնս նորա ոչ բաւական եմ ասել, *ի հանգիստ նորա նշխարացն* դարձուցից զբանս։ *Որպէս լուայ ի բազմաց*...„ (Խոր. Պատմ. Հյ. *Վենետիկ*, 1865, *էջ* 270—271.)

*Այստեղ արժանի են մտադրութեան — Խորենացու “գերազանցեալ„ բառը, որ գտնում ենք Սեղբեստրոսի Համառօտ վարքի համապատասխան հատուածում եւ որը նախադասել է հայ պատմագիրը*[1] *ընդարձակ վարքի “բարեփայլեալ„ ճապաղ ձեւին. — “մարդահաճութիւն„ կարճ ձեւը՝ փոխանակ հայ թարգմանութեան “մարդահաճոյութիւն„. — “երբեք ոչ„ կամ դիտմամբ փոխուած է “ոչ ուրեք„* (οὐδαμῶς)-*ի տեղ, եւ կամ յետոյ*

---

1 Եթէ Հ. Մեսրոպ առարկէ, թէ “գերազանցեալ„ը Փ. Սոկրատն է առել Խորենացուց՝ հետեւելով սորա “մեծ եւ անպայման հեղինակութեան„, — մենք կը հարցնենք՝ ինչո՞ւ հապա նա, Փ. Սոկրատը, բոլորովին անտես է առնում իր համար “կանոնական նշանակութիւն„ ունեցող հայ պատմագրին եւ այնպիսի կարեւոր կէտում, որպէս Մաշտոցի (կամ որ նոյնն է, Սեղբեստրոսի) հրաշալի նկարագիրն է։

սրբագրուած ընդօրինակողներից. — "մտօք ծննդականն" չունի ընդարձակ վարքը (եւ ոչ համառօտը), որովհետեւ նա՝ ինչպէս տեսանք, չկայ եւ յոյն բնագրում. իմ կարծիքով, այդ՝ Խորենացու յաւելցրածը պէտք է լինի, որին յատուկ են նման դարձուածներ; օրինակ՝ "մտաց ծննդականութիւն" (Պատմ, Հ. Ա. 3). — "բանիւք պայծառ" ակներեւ է, որ կոկուած է "բանիւ տրամաղձացեալ" բառացի տգեղ թարգմանութիւնից (διαλάμπων), որ անշուշտ ներհակ էր եւ Խորենացու կիրթ ճաշակին եւ՝ ընդհակառակը, սովորական եւ ընտել ընդարձակ վարքի յունամոլ թարգմանչին: Համմտ., օրինակի համար, եւ "տրամափախուստ" կազմութիւնը, էջ 693. — "գործովք ձաձկալ" նպատակով փոխակերպած է (— Յոյնի եւ հայ թարգմանչի „τῷ ἔργῳ ἅγιος“ =) "գործով սուրբ" ձեւից: — Դարձեալ՝ Խորենացու "ուսուցանելով անձանձրոյթ" չունի ընդարձակ վարքը (եւ ոչ համառօտը), որովհետեւ՝ ինչպէս տեսանք, նա չկայ եւ յոյն բնագրում. այդ դարձուածը՝ ինձ թւում է, փոխ է առել Խորենացին Փոքր Սոկրատից, որ գործ է ածում նոյն խօսքերը վերաբերութեամբ Յովհան Ոսկեբերանին. տես էջ 498 — "անձանձրոյթ յուսուցանելն": — Ընդարձակ վարքի "Այլ վասն զի զբոլորն նորա (Սեղբեստրոսի) [illegible] ոչ եմ բաւական առնել, առ ի մասնաւորականսն նորա գործեցեալս դարձուցից զբանս" — փոխուել է Խորենացու մօտ՝ "Այլ վասն զի զբոլոր

ազգութեանս նորա (Մաշտոցի) ու քաղաքին եմ
առել, ի հանգիստ նորա նշխարացն դադարեցոյց
զբանս": — Վերջապէս այն հանգամանքը, թէ
Ընդարձակ վարքի մեզ հետաքրքրող հատուա-
ծում կայ մի պարբերութիւն՝ "Երեանամեայ
ահայ ամաց էր... բարեվայելչացեալ հան
զբոլոր վիճակաւորսն", — որ պակասում է
յոյն բնագրում, եւ՝ ընդհակառակը, նկատվում է
Խորենացու փոխ առած տողերի մէջ՝ "գերա-
զանցեալ հան զամենայն, որ զայնու ժամա-
նակաւ էին առաքինիք", — մեր կարծիքով
ցոյց է տալիս ակներեւ կերպով հայ պատմագրի
ուղղակի եւ անմիջական կախումը ներքեյ, մեր ձեռքը
հասած Սեղբեստրոսի Ընդարձակ վարքի հայ թարգ-
մանութիւնից, որ՝ համաձայն գրչագիրների յիշա-
տակարաններին, Աբաս Գրիգոր Զորոյփո-
րեցու ձեռքով է կատարուել 678 թուականին:

Դառնալով այն խնդրին, թէ Խորենացին,
ինչպէս տեսանք, իւր պատմութեան ընթացքում,
նոյն իսկ համառօտ նկարագիրների մէջ, յիրաւի,
սիրում է օգտուել այլ եւ այլ բովանդակու-
թեամբ բոլորովին տարբեր աղբիւրներից՝ քա-
ղելով նոցանից կարճ ու ազդու ասացուածներ,
— դորա փայլուն ապացոյցը կարող ենք գտնել
նոյն 67[րդ] գլխում: Ս. Սահակի նկարագրում
Խորենացու մէջ բերած գեղեցիկ ասացուածը —
"պատուեալ (Սահակ) շնորհիւքն, պարկեշտեալ է
կուսականէն[1], փոխանորդեալ զկեանս" ամբողջապէս

---

[1] Խորենացու "ի կուսականէն" ըստ երեւութին
սխալմամբ է առաջացել գրչագիրներում՝ փոխանակ "ի

առած է Գրիգոր Նազիանզացու մի ճառի հայ թարգմանութիւնից. «...Եղիցուք մեքուր Արարչին, պատուեսցուք զպատկերն, պատկառեսցուք ի կոչմանէն, փոխադրեսցուք[1] զկեանս»: (Տե՛ս «Ի բանս եւ ի Հաւատարեցուցիչն», Ձեռագր. Վիեն. Մխիթ. Nr. 217, թղթ. 171ր:)

Նոյն իսկ Ս. Մաշտոցի վերը յիշած նկարագրից մի քանի տող յետոյ՝ Խորենացին իւր «զպարկեշտն զայն մարմին եւ նախ քան զմահն կերպեալ ի փոխեալսն» աչող նմանութիւնը քաղուած է դարձեալ Գր. Նազիանզացու ճառերից. «մանր ոսկերքն եւ նախ քան զմահն կերպեալք ի փոխեալսն»: (Տե՛ս Նորայր, Քննասէր, Բ, էջ 11:)

Եւ այսպիսի ծաղկաքաղը մանաւանդ թարգմանական գրուածքներից, ինչպէս վերը նկատեցինք, Խորենացու սիրածն է, նորա բնորոշ մատենագրական եղանակն է, որ տեսնում ենք նորա Պատմութեան համարեա ամէն մի երեսում, — այն է՝ Հայերին ամենեւին վերաբերութիւն չունեցող, բայց որ եւ է կողմից հետաքրքրական նկարագիրները, ասացուածները անգամ եւ կարճ դարձուածները յարմարցնել իւր հայրենակիցներին, իւր նկարագրած անձնաւորութիւններին:

---

կոչմանէն», ինչպէս ունի եւ Գր. Նազիանզացու բնագիրը՝ «ἡ κλῆσις» կոչումն: Տես նոյն ճառի բնագիրը՝ Migne, Patrolog. T. XXXV, p. 1050:

[1] «Փոխադրեսցուք զկեանս» բառացի բնագրի «μεταθώμεθα τὴν ζωὴν» է. Խորենացին դիտմամբ, թէ անգիտակցաբար, «փոխադրել»ի է փոխել, որ տարբեր նշանակութիւն ունի:

Այսպէս՝ Եւսեբիոս Կեսարացու Քրոնիկոնի Հայ թարգմանութեան մէջ գտնուած աւանդութիւնը Ցէնոնի որդու Մէմնոնի Տրովադացւոց Պրիամին օգնութեան գնալու եւ այնտեղ Հելլէններից սպանուելու մասին, — Հայ պատմագիրը առանց այլ եւ այլի վերագրում է Հայ Ջուանշէրին: — Կալլիսթէնի Հայ թարգմանութեան մէջ բերած Դարեհի ու Աղեքսանդր Մակեդոնացու նկարագիրը՝ Պարսիկների յաղթուելուց յետոյ, Խորենացին պատշաճեցնում է Հայ Արշակունի Երուանդին եւ Արտաշէսին: — Թ. Մակաբայեցոց գրքում յիշուած ալեզարդ եւ առաքինի Եղիազար Հրէի նկարագիրը, որպէս եւ Սողոմոնի Առակների մի երկու ասացուածները, Խորենացին յարմարցնում է Սմբատ Բագրատունուն, եւ այլն եւ այլն: Նոյն ուղղութեան շնորհիւ՝ Հայ պատմագիրը օգտուել է եւ Սեղբեստրոսի Ընդարձակ վարքից՝ Սեղբեստրոսի նկարագիրը Մաշտոցին յարմարցնելով:

## 2.

Անցնինք Սոկրատի հրատարակչի երկրորդ եզրակացութեան:

Արժ. Հ. Մեսրոպի ապացոյցների տարօրինակութիւնը այն է, որ՝ Հայ պատմագրի վարկը պաշտպանելու համար, նա սովորաբար մատնացոյց է անում "մեր ձեռքը չը հասած" աղբիւրներ, մի կողմ թողնելով բանաւոր պատճառները եւ աւելի հաւանական երեւոյթները: Խորենացին՝ նորա կարծիքով, օգտուել է Սեղբեստրոսի

Վարքի "մեր ձեռքը չը հասած" հայ թարգմանութիւնից. — Խորենացին օգտուել է Ագաթանգեղի Պատմութեան նոյնպէս "մեր ձեռքը չը հասած" մասերից՝ Մ. Կոստանդիանոսի հրաշալի դարձի, Ս. Նունէի եւ այլոց մասին։

Ս. Սեղբեստրոսի Վարքի "մեր ձեռքը չը հասած" մի այլ (երրորդ) հայ թարգմանութեան ենթադրութիւնը այնքան անհիմն է թւում մեզ, որ մենք աւելորդ ենք համարում դորա վերայ երկար կանգ առնել։ Խնդիրը այստեղ երրորդ կամ չորրորդ թարգմանութեան հաւանական լինելու մասին չէ. Խորենացու Պատմութեան մեզ հետաքրքրող հատուածների նմանութիւնները բոլորովին համաձայն են յիշեալ Վարքի երկու մեզ հասած հայ թարգմանութիւնների. մենք այդ տեսնում ենք, մենք շօշափում ենք, որովհետեւ դոքա մեր առաջն են դրուած եւ մենք միջոց ունինք համեմատելու դոցա եւ ստուգելու։ Բայց ի՞նչ կարելի է ասել մի երրորդ թարգմանութեան մասին, որի գոյութիւնը աւելի քան կասկածելի է. եւ ի՞նչպէս կարելի է լուրջ կերպով հիմնուել այդպիսի երեւակայեալ գրուածքի վերայ, որպէս անում է Հ. Մեսրոպ։ Մենք կարծում ենք, որ վիճելի խնդիրը լուծելիս՝ կարելի չէ դիմել նոյնչափ եւ աւելի վիճելի ու կասկածելի պարագաների, որից միայն մթութիւն եւ ամէն տեսակ շփոթութիւն կ'առաջանայ, այլ հիմնուելու է կարելոյն չափ հաստատուն կռուանների վերայ, որպէս զի դոցանից հետեւցրած եզրակացութիւններն էլ կա-

ընկլոյն չափ մօտ լինէին ճշմարտութեան կամ՝ գէթ հաւանականութեան։ Քննադատը այս միշտ պէտք է ունենայ ի նկատի։

Ագաթանգեղի վերաբերմամբ դիտելու է, որ Խորենացու Բ. գրքի 83 եւ 86 գլուխների վերջում յիշածը — "որպէս (համառօտ) ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս" — տեղիք է տուել բռնազբօս մեկնութիւնների։ Այդ երկուսից՝ առաջին գլխում Խորենացին վկայութեան է կոչում Ագաթանգեղին՝ [illegible] ոչ թէ իւր պատմած առասպելի (եղեփանդական բորոտութեան եւ անմեղ մանուկների արեան մէջ լուացուելու մասին), որ մի միայն Սեղբեստրոսի վարքն է հաղորդում, — այլ նախ՝ առ հասարակ նոյն 83րդ գլխի ընդհանուր բովանդակութեան, այն է՝ Կոստանդիանոսի թագաւորանալու, խաչի յաղթութեան նշանը նորան երեւալու, ճշմարիտ Աստծուն հաւատալու մասին, եւ մասնաւորապէս նոյն գլխի վերջին նախադասութեան — "զբռնաւորսն ամենայն բառնալով Աստուծոյ յերեսաց նորա (որպէս համառօտ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս)։"

Եւ իրօք, Հայոց Դարձի հեղինակը իւր ՃԻԵ գլխում համառօտ պատմում է Կոստանդիանոսի թագաւորանալը, ճշմարիտ Աստծուն հաւատալը, խաչի յաղթութեան նշանը երեւալը եւ եկեղեցի ու վկայարաններ շինելը՝ մասնաւորապէս շեշտելով "պիղծ եւ անօրէն" Դիոկղետիանոս, Մարտիանոս, Մաքսիմիանոս, Ղուկիանոս եւ Մաքսինտիանոս հեթանոս

թագաւորների եւ բռնակալների "ի մէջ ջն-ջելու„ մասին: Բոլորովին ի զուր է ուրեմն Ագաթանգեղի "մեր ձեռքը չը հասած„ մա-սերի վերայ յոյս դնելը. Հրաշքներին շատ հակամէտ Հայոց Դարձի պատմիչը՝ շուրջ երես նուիրելով իւր գրուածքում նաեւ Կոստան-դիանոսի դարձին, եւ ոչ մի խօսք չէ ակն-արկում Խորենացու նկարագրած նոյն կայսեր հրաշքի մասին, որը հարկաւ առիթ կ'ունենար նա, Ագաթանգեղ, յիշելու՝ գէթ համառօտ, եթէ ի-մանար եւ կամենար յիշել:

Պէտք է ասել, որ նոյն այդ ՃԻԵ գլխում չէ էլ նշմարվում որեւէ հետք գրուածքի ընդ-հատման, կրճատման կամ աղաւաղման: Իսկ ենթադրել, թէ այդ գլխից զատ՝ Ագաթան-գեղ նուիրած է եղել Կոստանդիանոսի դարձին մի այլ պատմութեան, որ՝ իբր թէ "մեր ձեռքը չէ հասել„, մեր կարծիքով՝ կատարեալ կամայա-կանութիւն է:

Վերջապէս, Խորենացու նոյն 83րդ գլ-խում գործածած մի քանի բնորոշ բառերն ու դարձուածները — օր. "որդիացեալն„ (Կոս-տանդիանոս), "յառաջաբերեալ„, "մարդա-սիրել„ — ընդհանրապէս անսովոր լինելով ի-րեն՝ Խորենացու ոճին, օտար եւ միանգամայն եւ Ագաթանգեղին եւ՝ ընդհակառակը, յատուկ եւ ընտել Մ. եւ Փ. Սոկրատին եւ նորա կից Սեղբեստրոսի Ընդարձակ եւ Համառօտ վարքե-րին: (Համմտ. էջ 8, 166, 763, 766:) — Այս է պատճառը, որ Խորենացու հաղորդած առաս-

պէլի նկարագրութեան քառայի նմանութիւնները յատկապէս Սեղբեստրոսի Ընդարձակ եւ Համառօտ վարքերի հետ՝ այլապէս կարելի չէ մեկնել, եթէ ոչ հայ պատմագրի փոխառութեամբ. Խորենացին օգտուել է անշուշտ այդ երկու Վարքերէցն էլ[1]։

Որպէս զի այդ մասին էլ տեղիք չը տրուի որեւէ տարակուսանքի, առաջ կը բերենք Խորենացու 83րդ գլուխը՝ զուգընթացաբար Սեղբեստրոսի Ընդարձակ եւ Համառօտ վարքերի հետ, նօսրատպով նշանակելով փոխառած բառերն ու դարձուածները հայ պատմագրի եւ իւր աղբիւրների համապատասխան հատուածներում, եւ շղագրով նոյն Վարքերին միայն յատուկ համանման մասերը։

---

1 Իմ „Армянскій Эпосъ“ հետազօտութեանս տպագրութեան ժամանակ՝ չունենալով ձեռքիս Սեղբեստրոսի Ընդարձակ Վարքը ամբողջութեամբ, ենթադրել էի (էջ 24), թէ Խորենացին իւր 83որդ գլխի համար օգտուել է յատկապէս Փ. Սոկրատից։ Այժմ՝ Սոկրատի լիակատար հրատարակութիւնը լոյս տեսնելուց յետոյ, ձեռնհաս եմ աւելի ընդլայնելու իմ առաջին եզրակացութեանս շրջանը։

դիցայ եւ դիտաւորա-
վկայեալ, ինքն եղե-
ֆանդակեան բարապա-
նեամբ ըստ բոլոր ըն-
կալեալ մարմնոյն առա-
կանեցաւ վասն յան-
դըգնութեանն։ Զոր
ոչ կարացին բուժել ա-
բեղական կախարդքն եւ
մարեալեան բժիշկքն. յա-
ղագս որոյ յղեաց առ
Տրդատ՝ առաքել նմա
դիւթս ի Պարսից եւ ի
Հնդկաց. սակայն եւ
այնք ոչ հասին նմա
յօգնուա։ Զոր եւ փարմ
ոմանք ի դիւաց խրա-
տուէ հրամայեցին բաղ-
մաղիեան փղայոց դե-
նալ յառաջանս ե-
ջերմարեամբ լուանալ ե-
ողջանալ. որոյ լուեալ
գուալիւն մանկանցն
հանդերձ մարցն կա-
խանմամբք, գթացեալ
մարդասիրեաց, զնո-
ցայն լաւ վարկու-

ուստի մեռանի առացեալ Արեգիլեանն կա-
խարդք եւ Մարաջիլեանն բժիշկք. եւ ոչ միայն
նոքա, այլ եւ որք ի Պարսից անեալք եւ
փորձք բժշկական գոլով արհեստից, ոչ կա-
րացին աւգնել նմա։ Երեւեցան ապա ոմանք
առ ի քրմանց տաճարին ասելով. պարտ է
առաջան լինել ի տաճարին եւ ընել զնա
արեամբ անապական մանկանց, յորում ջերմ
գոլով եւ ծխելով լուանալ զնա, եւ այնպէս
կարել մաքրութեան հանդիպել։ Եւ ահա
առաքեալ զօմանս ընդ բոլոր գաւառս, բազ-
մաբնեան մանկանց անծին. եւ ի սահմանեալ
աւուր երթեալք ի թագաւորէն ի տաճարն
էին պատրաստեալք, որք կամէին զմանկանն
զենանել։ Պատահեցան եւ մարք մանկանցն, ազով
մեծաւ գոչելով արտասուաւք, հերարձակ
մերկացեալ գլխով, եւ լցեալ կականագոչ
ողբովք, որպէս զի զամենայն զաւգս ողբ-
երգականն ձայնիւ ընուլ ... Հարցանելով
ապա թագաւորին, թէ զինչ այն իցէ, ու-
սանէր թէ մարք մանկանցն, զոր հրամայեալ
զենուլ, են յաղագս ընքեանց մանկանց։ Եւ
պարտեալ թագաւորն նանրութեամբ զաղ-
բալի գործոց սկսաւ արտասուել եւ մեծաւ
ձայնիւ ասել ... Նախամեծարել պա-
տուեմ զան զիմ առողջութիւն՝ զանապական
տղայոցն երկաբնեան ... Եւ ի նմին գիշերի

տեղի ի Սերապիոն լեառնն ... Յայնժամ
եղեփանդակեան բարապանեան զբոլոր մարմին
թագաւորին կատաանդիրանաւ աղաղանէր,
որպէս ի խրատ նմա առ ի յԱստուածոյ
լինել. վասն որոյ արեգիլեան կախարդքն եւ
արեգոգիլեան բժիշկք ոչ կարացին օգնել, ոն անդր,
եւ ոչ Պարսից եւ Հայոց։ Եւ նա տարակու-
սեալ արամէր։ Ըղձանային փառմք ի դիւաց
հրապուրանաց յոլովից փղայոց զենանել յառա-
ջանս մեհենից եւ լուանալ ջերմ արեամբ
զանձն եւ այնպէս առողջանալ ասէին։ Եւ
անդէն վաղվաղակի առաքեցան զինուորք
թագաւորին ընդ աշխարհն ամենայն, ժողո-
վել մանկունս անմեղս անջատեալս ի ծնո-
ղացն ի տաճար մեհենիցն առ ի զենանել յառա-
ջանան։ Եւ մարքն զկնի մանկանցն եկեալ
լային եւ աշխարհէին զմահ մանկանցն։ Եւ
լուեալ թագաւորն զձայն կոծոյ եւ աշխա-
րանաց ասէ ցմերձակայսն. զինչ է այս զոր
լսեմս. եւ ասեն. մարք տղայոցն որ առ ի
զենումն ժողովեցան մայրենի գթով աղե-
խարշեալք ... Եւ գղջացաւ թագաւորն եւ
ելաց դառնապէս եւ ասէ. քաւ լիցի ինձ
խողխողել զմանկունս անմեղս որոշեալս ի ծնո-
ղացն ի մահ, թէպէտ եւ ի մահ ձգէ զիս
ախտ բորոտութեանս եւ անբժշկելի մնամ ...։
Եւ յայնմ գիշերի տեսանէ Թագաւորն

Այս համեմատական աղիւսակից տեսնում ենք, որ աւելի քան 160 դէպքերում ընդարձակ եւ համառօտ վարքերը բառացի նմանութիւն ունին իրարու հետ՝ կրկնելով միեւնոյն խօսքերը. այդ թուից՝ միայն $^1/_3$ դէպքերում նմանութիւն ունի Խորենացու 83^րդ գլուխը նոյն Վարքերի համապատասխան հատուածների հետ, իսկ մնացեալ $^2/_3$ դէպքերում (շեշտուած շարուած խօսքերը) բոլորովին նման չէ նոցա: Այս հանգամանքը՝ մեր կարծիքով, ցոյց է տալիս մի կողմանէ՝ մեկ Վարքի անմիջական կախումն միւսից (եւ յատկապէս համառօտինը ընդարձակից) եւ միւս կողմանէ՝ Խորենացու վերջին կախումն միանգամայն երկու վարքերից էլ: Վերջին հետեւողութիւնը հաստատվում է նաեւ նորանով, որ "Հայոց Պատմութեան" մեր ուսումնասիրած գլուխը 20 դէպքերում[1] նմանութիւն ունի բացառապէս միայն ընդարձակ վարքի հետ եւ 14 դէպքերում[1] միայն համառօտի հետ՝ չը հաշուելով

---

| 1 ԸՆԴԱՐՁԱԿ ՎԱՐՔ | ՀԱՄԱՌՕՏ ՎԱՐՔ |
|---|---|
| Ի պատանեկէն ծնելոյն | Ընդ ժամանակս ը. ամն. |
| Առ ի Հեղինեայ | Բայց հրապարակեալ է ճոխոյն եարձ |
| Տեսեալ զնա պարթեւաւ | Արար հալածանս եկեղեցւոյ |
| Այսորն յազգենեայ | Բազումք եղեն վկայք |
| Յազգենաց պարթեւականացն | Զբոլոր մարմինն թ . . . պատկանէր |
| Ինքն եղեւ. բարձրութեամբ | Ի դիւաց հրապարականաց |
| Ըստ ճոխոյն ընծայեցաւ մարծոյ: | Զինեալ յաստուածոյն եւ զերդ որբեամբ լուանալ: |
| Ոչ կարացին օգնել նմա | Եւ որբնոյն ի քէն |
| Քուրմք սմանէ | Զբարութիւն: |
| Յաղմաւնեան մանկանց | |

վերոյիշեալ Նմանութեան դէպքերը միաժամանակ երկու Վարքերի հետ էլ։

Բաց ի դորանից՝ դիտելու է, որ Խորենացու վերջընթեր Նախադասութիւնը՝ "զըռնաւորսն ամենայն բառնալով Աստուծոյ յերեսաց Նորա„ ամենեւին առընչութիւն չունի Ընդարձակ եւ Համառօտ վարքերի հետ, որովհետեւ Բըռնաւորների մասին ոչինչ չէ յիշվում սոցա մէջ։ Վերն հարեւանցի Նկատեցինք, այժմ էլ կրկնում ենք, Թէ հայ պատմագրի այդ մէջ բերուած ամփոփումն պէտք է համարել Ագաթանգեղի Ձեռ. հատոծ ՃԻԵ. գլխի տառն եւ երկրորդ հատուածին, ինչպէս ուղղակի ակնարկում է եւ ինքը Խորենացին Նոյն Նախադասութեան վերջը — "որպէս համառօտ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս։„

Միւս դէպքը, ուր Խորենացին (Բ, 86) Նոյնպէս վկայութեան է կոչում Ագաթանգեղին, իմ կարծիքով, Թերիմացութեան արդիւնք պէտք է համարիլ.

"Զոր (զՆունէ) համարձակիմք ասել առաքելուհի եղեալ՝ քարոզեաց ի Կղարջաց սկսեալ առ դրամբք Ալանաց եւ Կասբից, մինչեւ ի սահմանս Մասքթաց, որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս։„

---

Կոխանադոչ ողքովք
Քան զէն... Բրիտանիա
Սեղքեստրոս Եղէոլոգոս
Ի լերին Սերապատնոս Թաքուցեալ։

Յիրաւի, Հայոց դարձի պատմիչը իւր ՃԻ. գլխում յիշում է նոյն սահմանները՝ միայն թէ վերաբերութեամբ ոչ Ս. Նունէի, այլ Հայոց առաքեալ՝ Լուսաւորչին. “Տարածանէր (Ս. Գրիգոր) զմշակութեանն քարոզութիւն... ի Սատաղացւոց քաղաքէն մինչեւ առ աշխարհաւն խաղտեաց, մինչեւ առ Կղարջօք, մինչև ի սպառ ի սահմանս Մասքթաց, մինչեւ ի դրունս Ալանաց, մինչեւ ի սահմանս Կասպից, ի Փայտակարան քաղաք արքայութեան Հայոց...„ — այսինքն՝ գրեթէ բառացի ինչ որ Խորենացին Ս. Նունէին է յատկացնում։

Արդ, ի՞նչպէս կարող էր Ագաթանգեղ, (եթէ ենթադրենք մի վայրկեան, թէ Նունէի մասին էլ է նա գրել իւր պատմութեան մէջ,) քարոզութեան նոյն սահմանները միանուագ վերագրել եւ Լուսաւորչին, եւ Նունէին. չէ՞ որ յատկապէս Հայոց առաքեալի մասին միայն կարող էր նա ասել “մինչեւ ի սահմանս Մասքթաց„, որովհետեւ այդ սահմանները՝ իւր իսկ վկայութեամբ, կից էին Հայաստանին եւ այդ կողմից՝ “ի Մասքթաց կողմանէ„ գոյութիւն ունէր Հայոց չորրորդ բդեշխութիւնը. (գլ. ՃԻԶ)։ Նոյն իսկ Ջուանշիրին ընծայուած Վրաց Պատմութիւնը (էջ 66), որի ցուցումները գէթ աւելի համաձայն պէտք է լինին Վրաց ազգային աւանդութիւններին, — ո՛չ ունի “մինչեւ ի սահմանս Մասքթաց„ եւ ո՛չ էլ այդչափ ընդարձակ սահմաններ է յատկացնում Վրաց Առաքելուհուն։

Խնդիրը՝ իմ կարծիքով, բացատրվում է աւելի պարզ կերպով։ Խորենացին, որ անշուշտ օգտուել է Փ. Սոկրատից, կարդալով վերջինիս յաւելուածը (էջ 67) — "ըստ առաքելուհւոյ կնոջն քարոզութեան, որում անուն էր Նունի, յընկերաց սրբոյն Հռիփսիմեայ, որ ի Հայս կատարեցաւ. Թողում ասել որ յաղագս Նորա (sic!) է պատմութիւն եւ հաւատալն Հայոց մեծամեծ սքանչելեօք ի ձեռն Գրիգորի Պարթեւի խոստովանողի, որ ստոյգ ցուցանէ Նորին գիրք" — "Նորա" դերանունը Նունէին է վերագրել՝ փոխանակ Հռիփսիմէին վերագրելու, դիտմամբ կամ սխալմամբ։ Հետեւաբար եւ Գրիգորի գրքում ("Նորին գիրք" — այսինքն Ագաթանգեղի մէջ) պէտք է որ՝ Խորենացու ենթադրութեամբ, վկայութիւն եղած լինէր Նունէի մասին։

Սակայն Փ. Սոկրատի համառօտ յիշատակութիւնը Ս. Հռիփսիմէի մասին միանգամայն ճշտվում է. Նա ակնարկում է Ագաթանգեղի պատմածը նոյն Ս. կուսի եւ նորա ընկերների մասին, որ այժմ էլ անփոփոխ, նոյնութեամբ գտնում ենք Հայոց դարձի Պատմութեան մէջ. իսկ Խորենացու իբր թէ Ագաթանգեղից քաղած մանրամասնութիւնները Նունէի մասին մնում են չստուգուած եւ խիստ կասկածի տակ։

Անցնելով Խորենացու եւ Սոկրատի նմանութիւններին վրայ դարձի պատմութեան մէջ, դիտելու է, որ այդ նմանութիւնները չէ ուրանում եւ ինքը Հ. Մեսրոպ. միայն թէ նորա

այնպիսի բացատրութիւններ է տալիս, որոնք շատ հեռու են ոչ միայն համոզեցուցիչ, այլ եւ փոքր ի շատէ հաւանական լինելուց։

“Խորենացին եւ Մ. Սոկրատը (Վրաց դարձի մասին) ոչ միայն առանձին բառերով, ասում է Հ. Մեսրոպ, այլ եւ ամբողջ նախադասութիւններով կարծես միմեանցից արտագրութիւն են։ Չը նայած այս հանգամանքին, անհնար է ընդունել, որ հեղինակներից մէկը միւսին գիտէ. միակ ուղիղ ենթադրութիւնն է՝ երկուսը ունեցել են աղբիւր — Սոկրատինը Ռուփինոսն է, Խորենացունը՝ Ագաթանգեղոսը։ Ռուփինոսը գրել է՝ լսելով Վրացի Բակուր իշխանից. իսկ ո՞րտեղից է առել Ագաթանգեղոսը՝ դժուար է ասել, քանի որ Ագաթանգեղոսի Նունէի մասին գրած լինելը միայն Խորենացուց գիտենք։ Ասել ենք եւ կրկնում ենք. Խորենացին Սոկրատից չէր բաւականանալ լոկ նախադասութիւններ փոխ առնելով։ Բոլորովին այլ է Փ. Սոկրատի հարցը. այստեղ միանգամայն հաստատվում է աւելի խօսուն փաստերով, որ Սոկրատի համառօտողը Խորենացու 86րդ գլխի մեծագոյն մասը յետ ու առաջ դնելով՝ տեղաւորել է իւր համառօտութեան մէջ։„ (Ցուցակ. էջ Հ.)

Նախ՝ եթէ “ամբողջ նախադասութիւններով„ բառացի նմանութիւն ունին Մ. Խորենացին եւ Մ. Սոկրատ եւ “կարծես միմեանցից արտագրութիւն են„, էլ ինչո՞ւ “անհնար է ընդունել, որ հեղինակներից մէկը միւսին գիտէ„ եւ ինչի՞ մէջ է կայանում այդ անհնարաւ-

որութիւնը, որ չէ հաճում բացատրել մեզ Հ. Մեսրոպ։

Երկրորդ՝ ընդունենք մի րոպէ Հ. Մեսրոպի “ծոյլ ուղիղ ենթադրութիւնը՝ (թէ) երկուսը (Խորենացին եւ Մ. Սոկրատ) ունեցել են աղբիւր՝ Սոկրատինը Ռուփինոսն է (այդ ճշմարիտ է), Խորենացունը՝ Ագաթանգեղոս„ (այդ դեռ հարց է)։ Բայց տարբեր աղբիւրներ ենթադրելով խնդիրը բնաւ չի լուծուիլ. ի՞նչպէս հապա կը բացատրէ Հ. Մեսրոպ իւր դիտած զարմանալի նմանութիւնները տարբեր աղբիւրներից օգտուող եւ միմեանց չը ճանաչող հեղինակների մէջ. ի՞նչ տեղից առաջացան այդ նմանութիւնները եւ ի՞նչպէս։ կարելի՞ բան է, որ Ագաթագեղ իւր (երեւակայեալ) “յոյն կամ վրացի աղբիւրը„ (էջ ՀԱ.), որի ո՛չ բովանդակութիւնը եւ ո՛չ ծաւալն է մեզ յայտնի, հայերէն թարգմանելով՝ միեւնոյն բառերը, դարձուածքները եւ ամբողջ նախադասութիւնները գործածած լինէր, ինչ որ նորան անծանօթ փիլոն Տիրակացին Սոկրատը բառացի ճշտութեամբ փոխադրելիս։ Եւս աւելի անհաւանական է, որ Ագաթանգեղի այդ երեւակայեալ աղբիւրից օգտուող Խորենացու գրուածքում Վրաց դարձը՝ այսպէս ասած, երկրորդ ձեռք անցնելով՝ նոյն նմանութիւնը պահպանած լինէր Մ. Սոկրատի հետ, ինչպէս շեշտում է Հ. Մեսրոպ։

Երրորդ՝ ինչ վերաբերվում է Խորենացու եւ Մեծ Սոկրատի “բառացի նմանութիւններին„, պէտք է նկատել, որ դոքա շատ չեն եւ

ոչ էլ «միմեանցից արտագրութիւն են», ներկայացնում «ամբողջ նախադասութիւններով», ինչպէս ասում է Հ. Մեսրոպ։ Բայց՝ որ աւելի կարեւորն է, Խորենացու «բառացի նմանութիւնները» Մ. Սոկրատի հետ այն չափով են, որ չափով Փ. Սոկրատ նման է Մեծին, որից եւ ինքը համառօտուած է. ուստի նոյն նմանութիւնները Խորենացու հետ կարող են հաւասարապէս վերաբերուել եւ Փ. Սոկրատին, որից իսկապէս եւ օգտուել է հայ պատմագիրը՝ առանց աչք դարձնելու գէթ այս անգամ դէպ ի Մեծ Սոկրատը։ Մեր ասածը փաստօրէն հաստատելու նպատակով՝ առաջ բերենք «Հայոց պատմութեան» 86որդ գլուխը զուգընթացաբար Մ. ու Փ. Սոկրատի հետ, — նօտրգրերով նշանակելով՝ ինչպէս եւ վերը, փոխ առած բառերն ու դարձուածքները հայ պատմագրի եւ իւր աղբիւրի համապատասխան հատուածներում, շղագրով միայն Մ. ու Փ. Սոկրատին յատուկ մասերը եւ փակագծերում [ ] Փ. Սոկրատի սեպհական յաւելուածներն ու ներմուծումները։

Ցաղագս Նոնէի երանելոյ, եթէ որպէս եղեւ պատճառ փրկութեան Վրաց։ Կին ոմն անուն Նունէ (var. Նունի), յընկերաց սրբոյն Հռիփսիմեանցն ի ցրուելոցն, փախստեամբ հասեալ յաշխարհն Վրաց ի Մծխիթայ, ի նոցա թագաւորանիստ նախաքաղաքն, յոյժ ճգնաւորեալ ստացեալ շնորհս բժշկութեան, որով եւ զբազումս ախտաժէտս բժշկեաց, եւ գլխովին զկին Միհրանայ առաջնորդին Վրաց։ Վասն



[կոչումն Վրաց ի հաւատս Քրիստոսի ըստ նախախնամութեանն Աստուծոյ ի ձեռն կնոջն Նունեայ ընկերոյ սրբոյն Հռիփսիմէի եւ կանանցն գլխոյն։] Ընդ նոյն ժամանակս եւ Վրաց լինի կոչումն ընծայութեան հաւատոյ ըստ նախախնամութեան։ Կին ոմն լի պարկեշտութեամբ զաստուածային վարս ստացեալ ունէր, հալածեալ [վասն Քրիստոսի] գայ ի Վիրս [ի թագաւորանիստ նախաքաղաք, ուր էր թագաւորն Վրաց։] Այս ոչ այն Վիրք են, որք ի Սպանիայն, այլ ի կողմն հիւսիսոյ մերձ ի Պոնտոս։ Եւ կինն ի մէջ բարբարոսաց բնակէր լի պարկեշտութեամբ ճգնաւորեալ պահօք եւ աղօթիւք, [պաշտէր զԱստուածն երկնի եւ երկրի] եւ զարմացուցանէր զբարբարոսն։ Ապա լինէր մանկան տղայոյ թագաւորին հիւանդանալ. կինն հրամայէր դայեկին շրջեցուցանել



Բայց՝ ի դէպ է արդէն ասել՝ թէ որպէս Վիրք ընդ նոյն ժամանակաւն քրիստոնէացան։ Կին ոմն վարս պարկեշտս եւ զգաստս ունելով, աստուածային նախախնամութեամբ ի Վրաց գերեալ լինէր։ Իսկ Վրացիքս այս բնակեն յԵւքսինոս Պոնտոս. բայց զատ են յայն Վրացեացն, որք ի Սպանիայն։ Իսկ գերեալն կին ի մէջի բարբարոսացն կալով, իմաստասիրէր։ Քանզի էր հանդերձ բազում ճգնութեամբ՝ պարկեշտիւ եւ պահովք խորագունիւք եւ անձանձիր կայր յաղօթս. իսկ զայս սքանչելիս տեսանելով բարբարոսացն ի գործողէն, սքանչանային։ Ապա պատահէր նոցա թագաւորական մանկան միոյ տղայոյ ի հիւանդութիւն անկանել։ Եւ սովորութեամբ իւիք ի գաւառն առ այլ կանայսն կին թագաւորին զմանուկն առ ի բժշկութիւն առաքէր, եթէ

---

1 Համեմատելով այս նախադասութիւնը Խորենացու նախընթաց՝ 85-րդ գլխի վերջում յիշած պարբերութեան հետ — «Բայց յաղագս հաւատոց Միհրանայ եւ աշխարհին Վրաց ասել կայ մեզ առաջիկայ» — Հ. Մեսրոպ դոցա մէջ «աչքի ընկնող նմանութիւն» է գտնում (էջ կթ.). Մինչդեռ յատկապէս այստեղ այդ նմանութիւնը կարող է եւ պատահական լինել։ Այդ՝ Խորենացուն յատուկ ոճն է, որ նկատվում է եւ ուրիշ գլուխների վերջում. Հմմտ. նոյն Բ. գրքի 69, 70, 85, 86 գլուխները։

որոյ Հարցեալ զնա
Միհրանայ, եթէ որո՞վ
զօրութեամբ առնես
զայս սքանչելիս, ուսաւ
զքարոզութիւն աւե-
տարանին Քրիստոսի.
եւ ախորժելով լուեալ
պատմեալ իւրոց նա-
խարարացն Հանդերձ գո-
վեստիւ: Եւ խնդրեաց ե-
Հաս ի նա լուր սքան-
չելեացն, որ եղեն ի
Հայս ի թագաւորն եւ
ի նախարարսն եւ զըն-
կերացն երանելոյն Նու-
նեայ. ընդ որ Հիա-
ցեալ, զրուցեաց երա-
նելոյն Նունեայ, որով
եւ ստուգագոյն եւս
տեղեկացաւ զամենայն
ոճով:

Եւ եղեւ ընդ առ-
աւօտն ընդ այնոսիկ ժա-
մանել Միհրանայ յորսո.
մոլորեցաւ ի գծուարս
լերանց խառաչեալ օ-
գով, այլ ոչ տեսա-

զմանուկն ընդ կանայսն թէ գոցի ղեղ ինչ.
եւ ոչինչ գտեալ. գա առ Հալածեալ [սուրբ]
կինն: Իսկ նորա զմանուկն ի գիրկս իւր
եդեալ առաջի բազմութեան ի Հանդերձս
մազեղէնս զոր ունէր. [եւ ամբարձ զաչսն
յերկինս] եւ պարզ նոցա բարբառով ասէ.
Քրիստոս [Աստուած], որ զբազումս բժշկ-
կեցեր, բժշկեա զմանուկս զայս [յանուն
քո, զի ծանիցեն ազգք թէ դու ես Աստուած:
Եւ կնքեաց նշանաւ խաչին զմանուկն] եւ
խնկոյն առողջ եղեւ. [եւ եռանդէն ի գայեակն
եւ տարաւ առ մայր իւր եւ պատմեաց որ
ինչ եղեւ: Եւ զարմացաւ] եւ ել Հռչակ
զնմանէ ընդ ամենայն երկիրն [Վրաց]: Ցետ
ոչ բազում ինչ աւուրց Հիւանդացաւ եւ
կին թագաւորին եւ կոչեաց զ[սուրբ] կինն.
եւ նա ոչ կամեցաւ երթալ յապարանս թա-
գաւորին. այլ ածել զնա յիւր [տառապա-
լապետ անիկն:] Եւ իբրեւ ածին յարուցեալ
կայր յաղօթս առ տէր, եւ զնոյն բանս
ասաց. եւ կնքեալ նշանաւ խաչին. եւ խնկոյն
ողջացեալ յարեաւ գնաց [եւ պատմեաց թա-
գաւորին զեղեալսն]. եւ առաքէ թագաւորն
պարգեւս բազումս շնորհակալից կնոջն: Իսկ
նա անդէն դարձուցանէր զպարգեւսն: Ասէ.
[իմ պարգեւատու է Քրիստոս Աստուած,
զոր պաշտեմ, որ լինս զպէտս իմ, որպէս

ուրեք ինչ ղեղ առ ախտն ի փորձականու-
թենէ մատուցանել մանգանն: Իսկ իբրեւ
շրջեցուցեալ լինէր մանուկն ի ղանէն
իւրմէ եւ ոչ եւ ի միոջ ումեքէ կանանցն բը-
ժշկութեան Հանդիպէր. յետոյ ապա ածին
եւ առ կինն գերեալ: Իսկ նա առաջի բա-
զում կանանց փայելչաբար զդեղն մատու-
ցանէ. զի եւ ոչ գիտէր ինչ. այլ ընդալեալ
ապա զմանուկն եւ ի մազեղէն իւրում
անկողնին եդեալ՝ ասէր պարզաբար. Քրիս-
տոս, ասէ, որ զբազումս բժշկեաց եւ զայս
մանուկս բժշկեսցէ: Եւ աղօթել այսու
բանիւ եւ կարդացեալ զԱստուած, առ ժա-
մայն մանուկն առողջանայր. եւ կեայր յայն-
մանէ բարւոք: Իսկ Հռչակ աստուստ կա-
նանց բարբարոսաց եւ կնոջ թագաւորին
ընթանայր եւ յայտնագոյն լինէր գերեալն:
Ցետ բազում ինչ իրի եւ կին թագաւորին
անկեալ գնէր ի Հիւանդութիւն ինչ. եւ
զկինն գերեալ կոչէր. իսկ նորա Հրաժա-
րեցելոյ ոչ ելանել ի չափաւորեալ իւր սո-
վորութենէն, այլ ածեալ զնա եւ առնէր
նմա, զոր արար ի վերայ մանգանն յառա-
ջագոյն. եւ նոյն ժամայն ախտացեալն բժշկէր
եւ գոՀանայր զկնոջէն: Իսկ նա ասէր. ոչ
իմ գործս, այլ Ցիսուսի Քրիստոսի՝ զաշ-
խարՀս արարողի: Զաս կարդալով յարգա-

նելեօք, ըստ այնմ թէ կոչէ զմեզ բարբառով, եւ դարձեալ՝ թէ զտիւ ի գիշեր մթացուցանէ:

Այսպիսի խաւարաւ ըմբռնեալ Միհրան, որ եղեւ նմա առիթ մշտնջենաւոր լուսոյն. քանզի ՝ զարհուրեալ, յիշեաց զոր լուաւ վասն Տրդատայ, եթէ կամեցաւ ճանապարհորդել յորս, հասին նմա հարուածք ի Տեառնէ. զոր համարեցաւ՝ թէ եւ նմա այնպիսի ինչ դիպելոց է: Եւ երկիւղիւ մեծաւ պաշարեալ, խնդրեաց աղօթիւք լուսաւորել օդոյն եւ դառնալ խաւարութեամբ, պաշտել զԱստուածն Նունէի խոստանայր. որում հանդիպեալ, կատարեաց զասացեալսն:

կամք:] Իսկ Թագաւորն սքանչացեալ շտեմարանեալ զայս ի միտս իւր ոչ մոռանայր: Յետ աւուրց ինչ ելանէ յորս Թագաւորն: Պատահէ նմա այս ինչ. ունէր միգային խաւար, ուր էր որսն, [illegible] եւ զդաշտս, զի անպատ էր եւ անտեսանելի էր ճանապարհն. եւ յանհնարութեան եղեալ կարդայր զաստուածս իւր եւ ոչինչ օգտէր: Դարձեալ մտախորհ եղեալ կոչել զԱստուած յօգնութիւն, զոր հալածական կինն պաշտէր, եւ եթէ նովաւ լինի ելք խաւարիս, պաշտեցից զնա: [Եւ ասէ. օգնեա ինձ Աստուած կնոջն, որ վասն քո հալածեալն է:] Եւ անդէն վաղվաղակի լուծանէր խաւարն եւ գնայր զճանապարհն ի տուն իւր ուրախութեամբ եւ օրհնէր զԱստուած: Եւ եկեալ պատմեաց կնոջն իւր [եւ նախարարացն] զեղեալ իրսն: Եւ սքանչանային: Եւ աղաչեալ զկինն կոչեաց ի տուն իւր խօսեցաւ ընդ նմա, թէ ո՞վ է Աստուածն զոր պաշտես [սքանչելեօք]: Իսկ նա [սկսեալ ի գրոց աւետարանեաց նմա զՔրիստոս Աստուած փրկիչ աշխարհի] առաջի ամենայն բազմութեան. եւ հաւատացին ասացելոցն ի նմանէ: [Բազում եւ այլ նշանս եցոյց Տէր ի ձեռն սուրբ եւ պարկեշտ կնոջն:] Եւ լինէր այնուհետեւ Թագաւորն արանցն քարոզ-

րէր ճշմարիտ զԱստուած ճանաչել: Իսկ սքանչացեալ Թագաւորն Վրաց վասն զառ ի հիւանդութենէն առողջութիւն վաղվաղակի փոփոխութեամբ. եւ հարցեալ թէ ո՞վ է որ բժշկեաց. պարգեւս գերելոյն Թագաւորն առաքէր: Իսկ նա ասէր, ո՛չ հայել ի մեծութիւնն. քանզի ունէր մեծութիւն զաստուածպաշտութիւնն եւ մեծամեծս ընդունել պարգեւս, զի ծանուցէ զԱստուած զառ ի նմանէ ծանուցեալն: Զայս ասելով նորա զպարգեւս անդրէն առաքէր: Իսկ Թագաւորն զբանսն շտեմարանէր: Իսկ յետ աւուրց բազմաց ելանել նորա յորս պատահէ այսպիսի ինչ. զկատարան ամենայն եւ զդաշտսն, ուրանուր որսն, ունէր միգային խաւար բազում. քանզի անպատ էր որսն եւ անանցանելի ճանապարհն եւ յանհնարութեամբ բազմի եղեալ, կարդայր առ Աստուածն, զոր պաշտէրն, եւ որպէս ոչինչ լինել առաւել. յետոյ ապա մտախորհ լինէր. զԱստուած գերեցելոյն առնու եւ զառ կարդա աւգնական. եւ ի յաղաւթելն ի միգէն խաւարն լուծանի: Եւ սքանչանալով ընդ եղեալն ուրախութեամբ ի տուն իւր երթայր. եւ զպատահումն պատմէր կնոջն իւրում: Եւ զգերեալն կոչեալ հարցանէ, թէ ո՞վ է Աստուածն, զոր պաշտես.

Իսկ նորա յանդիման եկեալ քարոզ Քրիստոսի զթագաւորն Վրաց արար: Քանզի հաւատացեալ ի Քրիստոս ի ձեռն բարեպաշտ կնոջն. այլ եւ զօրս ըստ որոյն պատմելոյ յորդորէր զնոսա զԱստուած գերեցելոյն պաշտել: Եւ լինէր այնուհետեւ բերանացի քարոզ Աստուծոյն բանի, թագաւորն արանցն, իսկ կինն կանանցն. ուսեալ ի կնոջէն եւ զձեւս եկեղեցեացն Հոռոմոց. տուն աղօթարանի հրամայեաց շինել. եւ նոյն ժամայն ի շինուած պատրաստէր: Եւ տունն կանգնեալ լինէր. եւ իբրեւ զսիւնսն կանգնէին համբարձեալ լինէին անտեսութեամբ ինչ առ հաւատն զընակեալսն քարշէր նախախնամութիւնն: Քանզի մինն ի սեանցն անշարժ մնայր. եւ ոչ մի ինչ գտանէր մեքենայ կարել շարժել զնա. այլ եւ փոկքն կտրեալ լինէին եւ մեքենայքն անկեալ. առ այս ամենայն եղեալ գործողացն գնացին: Եւ յայնժամ ցուցանի հաւատ գերեցելոյն. քանզի գիտացեալ հասանէ ի տեղին եւ զգիշերն ամենայն յաղօթս պարապեալ: Նախախնամութեամբն Աստուծոյ կանգնի սիւնն եւ բարձրագոյն զխարիսխին յօդան հաստատէր, ոչ իբրեւ ի ծայրն հպեցելոյ: Իսկ ի տուընջեանն կայր թագաւորն ի վերայ շինածին հող տանելով,

Իսկ երանելոյն Նունէի խնդրեալ արս հաւատարիմս, յղեաց առ սուրբն Գրիգոր, եթէ զինչ հրամայեսցէ նմա գործել այնուհետեւ. քանզի յօժարութեամբ ընկալան Վիրք զքարոզութիւն աւետարանին: Եւ հրաման ընդունի՝ կործանել զկուռսն, որպէս ինքն արար, եւ կանգնել զպատուական նշանն խաչին մինչեւ ցօր տալոյ Տեառն հովիւ յառաջնորդութիւն նոցա: Եւ իսկոյն կործանեաց զամպրոպային պատկերն Արամազդայ, որ կայր մեկուսի ի քաղաքէն՝ գետոյն հզօրի ընդ մէջ անցանելով. զոր սովոր էին երկրպագել այգուն այգուն ի տանեաց իւրաքանչիւր, զի հանդէպ նոցա

եւ կինն կանանցն ի նմանէ վարդապետեալք, [որ ի փառս Աստուծոյ]:

Եւ հրամայէր սրբեմն կանգնել [զնշան խաչին Քրիստոսի. եւ զի ոչ էր գործ ծաղկափառի, արհամարհելի լինէր ի բազմաց. իսկ սուրբ կինն կայր յաղօթս զգիշերն ամենայն եւ ի վաղիւն լուսաւորեալ լինէր նշան խաչին, որ հիացոյց զհեռաւորս եւ զմերձաւորս եւ հաստատեցան ի հաւատս:] Յայնժամ հրամայէ շինել տուն աղօթից. եւ ոչ յապաղեն առնել զառաջեալսն: Եւ գործաւորքն ոչ կարէին կանգնել զսիւնս աղօթիցն մեքենայիւք իւրեք, եւ բազմութեամբ հանդերձ թագաւորաւն, թէպէտ եւ բազում մրցեցան եւ ոչ կարացին կանգնել: Իսկ սուրբ կինն կացեալ ի տեղւոջն կայր յաղօթս. եւ իսկոյն սիւնքն կանգնեցան ի վերայ խարսխացն առանց մարդոյ եւ մեքենայից: Աղաղակեաց ամենայն բազմութիւն ճշմարիտ զԱստուած կնոջն խոստովանեալ եւ մեծ գոլ զհաւատ թագաւորին եւ տիկնոջն: [Եւ մեծանայր անուն Տեառն:] Աստուստ լինի դաշնաւորութիւն Վրաց առ Կոստանդիանոս, որպէս զի առաքեսցէ նոցա եպիսկոպոս եւ քահանայս, [որ զկարգ եկեղեցւոյ ի նոսա հաստատեսցեն. ըստ առաքելահաւոյ կնոջն քարոզութեան, որում անուն էր

երեւէր. իսկ եթէ ոք զուհել կամէր, անցեալ ընդ գետն առաջի ձե-հենիցն զուհէր։

Նուանք յընկերաց որոյն Հախփախեա, որ ի Հայս կատարեցան։ Թողում ասել, որ յա-զագս նորա է պատմութիւն եւ հաւատալն Հայոց մեծամեծ աքանչելեօք ի ձեռն Գրի-գորի Պարթեւի խոստովանողի, որ աւսուց-ցուցանէ նորին գիրք։ Եւ այս ամենայն լինէր ի նոյն ամս։]

Բայց ի վերայ նոցա յարեան նախարարք քաղաքին, եթէ զո՞վ արդեօք փոխանակ կւոցըն երկրպագեմք. ուստի՝ եթէ նչանի խաչին Քրիս-տոսի, զոր արարեալ կանգնեցին ի վերայ վայելուչ բլրոյն յարեւելից կողմանէ քաղաքին, մեկուսի բաժանեալ եւ նա փոքրագոյն գետով։ Եւ երկրպագեցին ամենայն բազմութիւնն ընդ առաւօտն նոյնպէս ի տա-նեաց իւրաքանչիւր։ Բայց յորժամ ելեալ ի բլուրն, տեսին փայտ կոփեալ՝ ոչ ծործորոց ինչ գործ, յոլովք քան զսակաւս արհամարհեցին, իբր թէ այնպիսեաւ չի իցէ ամենայն անուանն նոցա. եւ թողեալ ի բաց գնա-ցին։ Իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ ի գայթագղութիւն նոցա, առաքեաց յերկնից սիւն ամպոյ, եւ լցաւ լեառնն բուրմամբ անու-շահոտութեամբ. եւ ձայն բազմութեան սաղմոսերգուաց լսելի եղեւ. քաղցր յոյժ եւ ծագեաց լոյս ապաւորութեամբ խաչի լուս ձեւոյ եւ չափոյ փայտեղինին, եւ կալով ի վերայ նորա հանդերձ երկոտասան աստեղօք. յոր ամենեցուն հաւատացեալ, երկրպագեցին նմա։ Եւ յայնմ հետէ զօրութիւնք բժշկութեան կատարէին ի նմանէ։

Իսկ երանելին Նուանէ եւ գնաց աշակերտել զայլ եւս գաւառն Վրաց յանապակէլեզուէն, շրջելով անպաճուճարար եւ առանց աւելոր-դաց, ստարացեալ յաշխարհէ եւ որ ի սմա, կամ թէ ճշմարտագոյն ասել՝ ի խաչ ելեալ ի կրթութիւն մահու գիեանան առնելով, բանիւ վկայ որպէս արեամբ պսակեալ։ Զոր համարձակիմք ասել Առաքելա-հի դրամբք Ալանաց եւ կարից մինչեւ ի սահմանս Մասքթաց, որպէս

եւ տեսեալ զսիւնն ի յիւրմէ կախեալ զար-մանայր ի վերայ եղելոյն. աքանչանային եւ որք առընթերն կային. քանզի յետ սակաւ ինչ ի յաչս նոցա ընքեամբ չարժմամբ իջեալ սիւնն հաստատէր։ Գոչումն բազում աւ-տուստ հեռուեցաւ մարդկանն, ծչմարիտ զհաւատ թագաւորին վերակոչեցելոյ եւ աւրհնելով զԱստուած գերեցելոյն։ Այս հաւատացեալք յաւժարութեամբ բազմա-նաւս զայլ սիւնսն կանկնէին եւ ոչ ի յերկարս ինչ նոցա գործն կատարէր։ Եւ բարեխաւ-սութիւն աստուստ առ թագաւորն Կոս-տանդին լինէր. աղաչելով դաշնաւորք անուն յառաջ Հռոմայեցւոցն լինել եւ առնուլ եպիսկոպոս քահանայական վիճակ, քան ի սուրբ գոյզպէս հաւատալ ասեն Քրիստոսի։ Զայս ասէ Ռուփին ի Բակրոյ լսեալ, որ յառաջ էր թագաւոր Վրաց, իսկ յետոյ եկեալ ի Հռոմ կարգապետ որոց ի Պա-ղեստին զաւրուցն եղեալ եւ յետ այսորիկ զաւրավարացն որ ընդդէմ Մաքսիմոսի բըռ-նակալի պատերազմն Թէոդոսի թագաւորի համաջնաւող լինէր։ Այսու պատճառաւ ի ժամանակին Կոստանդնի եւ Վիրք ի քրիս-տոնէութիւն եկին։

բանին Աստուծոյ եւ յօժարութեամբն իւրով՝ եղեալ, քարոզեաց ի Կղարջաց սկսեալ առ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս։

Արդարեւ, համեմատելով "Վրաց դարձը" ըստ Մ. ու Փ. Սոկրատի եւ Խորենացու, տեսնում ենք, որ առաջին երկուսը՝ կարելի է ասել, մէկը միւսից ճիշտ արտագրութիւն են ներկայացնում՝ բազմաթիւ նման դարձուածքներով, ամբողջ նախադասութիւններով, անգամ եւ ընդարձակ հատուածներով: Բոլոր նման խօսքերի թիւը 147ի է հասնում. այդ թուից միայն եօթ դէպքում նմանութիւն ունի Խորենացու 86րդ գլուխը Մ. ու Փ. Սոկրատի համապատասխան հատուածների հետ. իսկ մնացեալ 140 դէպքում (շեղագրով շարուած խօսքերը) ամենեւին նման չէ նոցա: Դորանից զատ, Փ. Սոկրատ՝ մտցնելով հանդերձ, ըստ իւր սովորութեան, բազմաթիւ (քսան եւ երեք) աննշան՝ բնագրի ընդհանուր իմաստին եւ բովանդակութեանը չը հակառակող[1] յաւելուածներ եւ ներմուծումներ իւր համառօտութեան մէջ (որոնց թւում եւ Նոնէ անունը եւ սորա՝ Ագաթանգեղի պատմած Հռիփսիմէին ընկեր լինելը), — աւանդում է նոյն պատմութիւնը բոլոր կէտերում համաձայն Մեծ Սոկրատին: Ակներեւ է ուրեմն, որ Մ. եւ Փ. Սոկրատի նմանութիւնները իրարու հետ սերտ կապ ունին՝ մէկը միւսից առաջանալով, բոլորովին անկախ Խորենացուց:

Իսկ հայ պատմագրի նմանութիւնները՝ ընդ ամէնը թուով տասնուհինգ, ինչպէս շատ չափաւոր են, զգուշութեամբ քաղուած եւ

---

1 Եթէ միայն չը հաշուենք խաչի նշանի համառօտ ներմուծումը:

միայն մի քանի բնորոշ բառերում եւ կարճ դարձուածքներում նկատելի: Այդ թուից եօթը, ինչպէս տեսանք, ընդհանուր են Մ. ու Փ. Սոկրատին, եւ մնացեալ ութը գտնում ենք միայն Փոքր Սոկրատի սեպհական յաւելուածներում. ուստի Խորենացու կախումը Փ. Սոկրատից միանգամայն պարզ է: Բաց ի դորանից՝ կարեւոր է դիտել, որ Խորենացու 86^րդ գլուխը՝ յիշեալ նմանութիւններով հանդերձ, Վրաց դարձի իրողութիւնների մեծագոյն մասը բոլորովին տարբեր է առնչւում ոչ միայն Մեծ, այլ եւ մանաւանդ Փոքր Սոկրատից, եւ այն՝ ըստ երեւութին ոչ առանց նպատակաւոր կողմնակալութեան:

ա. — Վրաց առաջնորդ (եւ ոչ թագաւոր) Միհրան՝ նախ քան իւր հաւատալը, իմացաւ Հայոց դարձի մասին եւ ստուգեց այդ լուրը Ս. Նունէից — մի հանգամանք, որ ամենեւին չեն յիշում Մ. ու Փ. Սոկրատ:

բ. — Խորենացին առաջ է բերում՝ Մ. ու Փ. Սոկրատին նոյնպէս բնաւ անծանօթ՝ Վրաց առաջնորդի անունը (Մէհրան), մայրաքաղաքը (Մժէժնա) եւ Արամազդի ամպրոպային պատկերը:

գ. — Խորենացին լռում է Մ. ու Փ. Սոկրատի աւանդած աղօթատան կամ եկեղեցու շինութեան մասին, որ ձեռնարկեց Վրաց թագաւորը:

դ. — Եկեղեցու շինութեան համար Աստուծոյ նախախնամութեամբ կանգնած Նէ-Բոկան (քարեայ կամ փայտեայ) սիւնը (ինչպէս ունին համաձայն Մ. ու Փ. Սոկրատ) հայ պատմագրի

86րդ գլխում լոկ "սիւն ամպոյ" է դարձել, որից "լցաւ լեառն բուրմամբ անուշահոտութեամբ", եւայլն, առանց ակնարկելու եկեղեցու մասին։

Ե. — Խորենացին՝ ընդարձակելով Փ. Սոկրատի կարճ ներմուծումը խաչի նշանի մասին, աւելացնում է եւ "հանդերձ երկոտասան աստեղօք", որ չունի ոչ միայն Մեծ Սոկրատը, այլ ոչ եւ Փոքրը։

Զ. — Խորենացին դնում է մանրամասն Ս. Նունէի քարոզութեան սահմանները, որ նոյնպէս չունին Մ. ու Փ. Սոկրատ։

Է. — Վերջապէս, Խորենացին Ս. Նունէին դիմել է տալիս Լուսաւորչին՝ Հայոց հայրապետի անմիջական տնօրինութիւնը խնդրելով աւետարանի քարոզութիւնը ընդունած վրաց մասին. մինչդեռ ոչ միայն ըստ Մ. ու Փ. Սոկրատի, այլ եւ ըստ Ռուփինոսի, Սոզոմենի, Թէոդորիտի եւ ուրիշների — Մեծն Կոստանդիանոսին է դիմում Նունէն նոյն նպատակով։

Արդ՝ եթէ Խորենացին, ինչպէս կրկնում է միշտ Հ. Մեսրոպ, յիրաւի մեծ, անգամ եւ կանոնական նշանակութիւն ստացած հեղինակութիւն էր Սոկրատի Եկեղ. պատմութիւնը համառօտողի համար, ինչո՞ւ հապա սա չէ հետեւում հայ պատմագրին յատկապէս յիշեալ հիմնական եւ ծանրակշիռ կէտերում, որոնց թւում եւ Ս. Նունէի Լուսաւորչին դիմելն է։ Եւ միթէ այսպէ՞ս պէտք է վարուէր Սոկրատի գիրքը քան աղբիւրին պատմութեան համապատասխան չլինող

եւ իւր համառօտութիւնը այդ պատմութեան բացարձակ հեղինակութեան՝ Խորենացուն, յարմարցնող մատենագիրը, ինչպէս հաւատացնել է ուզում մեզ Հ. Մեսրոպ[1]: (Յառաջ. էջ ԺԵ:)

Միւս կողմից՝ ենթադրել վերոյիշեալ տարաձայնութիւնների հիման, թէ Խորենացին օգտուել է Վրաց դարձի համար այլ, մեզ անծանօթ կամ մեզ չը հասած վրացերէն գրաւոր աղբիւրներից, — մեր կարծիքով անտեղի է, եւ ահա ինչու: Այդ եօթը տարաձայն կէտերից՝ առաջինը եւ վերջինը, որպէս եւ Միհրանին Հայոց թագաւորի լոկ զօրավար դարձնելը (Բ. 85), գրուած են ակներեւ նպատակաւոր կողմնակալութեամբ յօգուտ Հայ եկեղեցու եւ ազգի նախաւորութեան եւ գերիշխանութեան, որոց այնչափ նախանձախնդիր է Խորենացին. երկրորդը (գէթ վերաբերութեամբ Միհրանին եւ Արամազդի ամպրոպային պատկերին) եւ հինգերորդը նշան են յետ ժամանակի աւանդութեան, որ

---

[1] Վերցնենք ուրիշ օրինակներ. կարո՞ղ էր արդեօք Փ. Սոկրատ գրել Հայի ականջին այնչափ խժական Իսդէ-գերդէս (էջ 581, 582, 583, 602) Բարարանէս (էջ 583, 607՝ աղաւաղուած — եւ ի հարկէ կ'աղաւաղուի — Բառա-բանիս այլովք հանդերձ) — Պարսից թագաւորների անունները, եթէ նա, Հ. Մեսրոպի ասելով, բերան գիտէր Խորենացուն, որ արդարեւ շատ յաճախ յիշում է Յազկերտներին եւ Վռամներին եւ նոցա քաղաքական յարաբերութիւնները Յոյների հետ Արկադի եւ Փ. Թէոդոսի օրերով (Խոր. Գ. 52, 54, 56, 67): Դարձեալ, ինչո՞վ պէտք է բացատրել, որ Փ. Սոկրատ չէ յիշում Ս. Բարթողիմէոսին՝ իբրեւ Հայոց առաքեալ, Խորենացուն համաձայն (Բ. 34), այլ միայն Հնդկաց (էջ 57), որ շատ խորհրդածութիւնների տեղիք է տալիս, եւ այլն եւ այլն:

դեռ է. դարու վերջում՝ ըստ երեւոյթին, անծանօթ է փ. Սոկրատին. երրորդն ու չորրորդը (եկեղեցու շինութիւնը) նոյնպէս նպատակաւոր փոփոխութիւն են՝ եւ ի հարկէ, ոչ ի նպաստ Վրաց. վերջապէս, վեցերորդը (Նունէի քարոզութեան մասին), ինչպէս ասացինք, թերիմացութեան արդիւնք պէտք է համարել։

Ուստի մեր այս ասածներից կարող ենք հետեւցնել. ոչ թէ փ. Սոկրատն է համառօտողը, այլ Խորենացին, որ սորա “Վրաց դարձի„ մեծագոյն մասը կրճատելով եւ յետ ու առաջ դնելով՝ տեղաւորել է իւր 86րդ գլխում։

## 3.

Գանք, վերջապէս, Սոկրատի հրատարակչի վերջին “եզրափակութեան„. — “Մովսէս Խորենացին շատ յայտնի եւ համարեա կանոնական նշանակութիւն ստացած հեղինակն էր այն ժամանակ, երբ կրճատում էր Մեծ Սոկրատը, եւ համառօտողը խոնարհելով նրա մեծ հեղինակութեան առաջ, նոյն իսկ իւր բնագիրը՝ ըստ այնմ է փոխում, շարունակ օգտուելով Խորենացուց„։

Այս՝ Հ. Մեսրոպի, ըստ երեւոյթին, ամենազօրաւոր փաստն է յօգուտ հայ պատմագրի անկախութեան եւ ընդդէմ նորա քննադատների. բայց վերը առաջ բերած մեր բաղդատութիւններից յետոյ՝ կարծում ենք, էլ հարկ չկայ երկար կանգ առնել այս եզրակացութեան վերայ, որ ոչ այլ ինչ է, եթէ

ոչ լոկ ենթադրութիւն՝ կարօտ ապացուցման, եթէ կամիք՝ գեղեցիկ խօսքեր, առանց որ եւ է հաստատուն՝ անգամ եւ հաւանական հիմունքի։

Արդարեւ, որ եւ է մատենագրի հանրածանօթ, մանաւանդ թէ կանոնական նշանակութիւն ստացած լինելը որոշ դարերում ինչի՞ց կարելի է հետեւցնել, եթէ ոչ՝ ժամանակակից մատենագիրների վկայութիւններից։ Ուրիշ ի՞նչ միջոց կայ։ Արդ, Խորենացու՝ եօթներորդ դարում (երբ անտարակոյս կատարուել են Սոկրատի երկու հայ թարգմանութիւնները) հայ գրականութեան մէջ այդպիսի անպայման հեղինակաւոր անձն լինելը, որպէս Հ. Մեսրոպ է պնդում, ինչո՞վ կարելի է ապացուցանել. սկսած հինգերորդ դարից մինչեւ ութերորդը՝ ո՞վ է մեզ հասած մատենագիրներից[1] (դոցա թւում եւ Մ. ու Փ. Սոկրատ) յիշում նորան յանուանէ՝ իբրեւ հայ Պատմագրի։ Եւ ոչ ոք։ Այս բաւական չէ. չը յիշելով Խորենացու անունը՝ նոքա, ինչպէս տեսնում ենք, եւ ոչ մի դէպքում չեն էլ երեւում օգտուած լինել նորա հռչակաւոր պատմական գրուածքից, որ անշուշտ շատ գրաւիչ պէտք է լինէր ամենի համար (եթէ գոյութիւն ունեցած լինէր մինչեւ ութերորդ դարը), — մանաւանդ իւր նախնական հայ պատմութեան փայլուն նկարագրու-

1 Ղ. Փարպեցու որպէս եւ Յ. Օձնեցու յիշած Մովսէսը տարբեր անձնաւորութիւն է. սա յայտնի փիլիսոփոս եւ թարգման էր եւ ոչ թէ պատմագիր։ Հմմտ. Նաեւ Gutschmid, kl. Schrift. III. 335 եւ Vetter, Հայ Թարգ. "Ազգ. Մատեն." ԺԷ։

թիւններով, ինչպէս յիրաւի եղաւ նա ութերորդ դարից յետոյ։ Երեւի թէ Հ. Մեսրոպ կարծում է շատ զօրեղ ապացոյց առաջ բերած լինել յօգուտ Խորենացու մեծ հեղինակութեան եօթներորդ դարում, երբ՝ փոքր ինչ շփոթ կերպով թուելով կամսարականների հովանաւորութեան տակ նոյն դարում ծաղկած մի քանի մատենագիրներին, որոնք նոյնպէս բնաւ գաղափար չունին Խորենացու Հայոց Պատմութեան մասին (Աբրա Գրիգոր Զորոյփորեցի, Փիլոն Տիրակացի, Անանիա Շիրակացի), — բոլորովին անակնկալ եւ անփաստ եզրակացութիւն է անում. "Ուրեմն (sic!), ասում է նա, եօթներորդ դարու վերջում Խորենացու Հայոց Պատմութիւնը հայ գրագէտների շրջանում հանրածանօթ (°) եւ հեղինակաւոր գիրք էր։„ (Յառաջ. էջ Դ—ԴԱ։)

Յայտնի է սակայն, որ՝ մեզ հասած հաստատուն տեղեկութիւնների հիման, պատմիչներից Յովհաննէս կաթուղիկոսը (897—919թ.) առաջինն է, որ յիշում է Մ. Խորենացուն՝ իբրեւ հեղինակի Հայոց Պատմութեան եւ օգտվում այս գրքից լիուլի, որպէս եւ նորան յաջորդող բոլոր հայ պատմիչներն ու ժամանակագիրները։

Բոլոր մեր ասածներից՝ կարծում ենք, կարելի է հետեւեալ եզրակացութիւններն անել.

ա. Խորենացին ճանաչել է Սոկրատի եկեղեցական պատմութեան եօթներորդ դարու հայերէն թարգմանութեան համառօտութիւնը կամ՝ որ նոյնն է, փ. Սոկրատը, եւ օգտուել է նորանից։

բ. Խորենացին ճանաչել է Ս. Սեղբեստրոսի Վարքի նոյնպէս եօթներորդ դարու վերջում կատարուած ընդարձակ եւ համառօտ հայերէն թարգմանութիւնները, եւ օգտուել է նոցանից։

*Մոսկուա, 17 Օգոստ. 1897, Լազարեան ճեմարան:*

# ԱԶԳԱՑԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց պատմութեան. 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Փր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց: 1890: 8° Երես՝ 50 (պատկերազարդ:) Փր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ սարկի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Փր. 1.25

Դ. Դեմետրիոս Տաքի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Փր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Փր. 3.—

Զ. Աւգէր Տրվէլ եւ Գ. Փիտոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Փր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Փր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Փր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794—1860: 1893: 8° Երես՝ 232 (Լուսանկարով): Փր. 2.50

*Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ե. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Է+92:* *Փր. 1.25*

*ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յերիսաքեթուպոլիս Դրամսիլուանիոյ 1680—1779: 1893: 8° Երես՝ Ժ+533 (1 զնկատիպ.):* *Փր. 4.50*

*ԺԲ. Խաչաթեան Գր., Ջենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Փր. 1.—*

*ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: 1894: 8° Երես՝ 103 (6 տախտակ՝ 55 պատկ.): Փր. 2.—*

*ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտ. Բ. կամ Եւսեբեան: Թրգմ. Հ. Ե. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43:* *Փր. 1.—*

*ԺԵ. Տաշեան Հ. Ե. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա. Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ. Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ. Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անունանք: 1894: 8° Երես՝ 9+145:* *Փր. 2.—*

*ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտ. Ա. Ա—Զ: 1895: 8° Երես՝ ԺԲ+294:* *Փր. 3.60*

*ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202:* *Փր. 2.50*

*ԺԸ. Տիգրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192:* *Փր. 2.—*

*ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրամսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8° Երես՝ Թ+352:* *Փր. 3.60*

*Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Վարդապետութիւն առաքելոց անվաւերական կանոնաց մատեանը, Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադէի: 1896: 8° Երես՝ Թ+442:* *Փր. 6.—*